


# Կոմերիտմիություն

*ՍՈՂՈՄՈՆ ՄԿՐՏՉՅԱՆ*

**Իզուր չէ նա կոչվում Լենինի անունով:**
**Հասել է այդ փառքին արժանի՝**
**Քրտինքով, արյունով:**

**Անցել է նա համառ պայքարի բովերով,**
**Փոթորկոտ ծովերով...**

**Կուրծք է տվել խենթ հողմերին կատաղի**
**Ու սանձել պողպատե նժույգներն ամեհի,**
**Գետերը սրընթաց,**
**Ստիպել, որ նրանք ընթանան նոր հունով...**
**Իզուր չէ նա կոչվում Լենինի անունով...**

**Պատանի՛ լենինյան,**
**Հետևի՛ր դու նրան՝ եղբորը քո ավագ,**
**Քայլի՛ր դու նրա պես խիզախ ու աննվարան,**
**Նվաճի՛ր նորանոր բարձունքներ լուսաթագ:**

**Ու պատվով անցիր դու վեհ ուղին քո կյանքի:**

**Կանչում է քեզ նույնպես երկիրդ սխրանքի,**
**Որ քարից հաց քամես քո ոսկե բազուկով**
**Ու լցնես երկիրը դու հազար բարիքով,**
**Ծվ առաջ անցնելով մարդկային երազից,**

**Որ գետից լույս հանես ու մետաքս՝ ավազից,**
**Սավառնես արծվի պես աստղային անհունով՝**
**Լենինի անունով,**
**Լենինի անունով...**

Մեր մայրերը հունձ էին անում ու լաց էին լինում: Ձիերին տարել էին պատերազմ, եզների հետ բանում էին ու լաց էին լինում: Գուլպա էին գործում ու լաց էին լինում: Հետո լուռ էին լաց լինում, հետո երգելով էին լաց լինում: Երգելով լաց էին լինում ու լացի մեջ ասում էին՝ «Շաքրո՛ո», «Մարտիրո՛ս», «Շաքրո՛», «Պիո՛ն», «Գիքո՛ր»: Մենք նրանց լավ չէինք տեսել, մենք նրանց չէինք հիշում, մեր մայրերը լացոտ երգի միջից ասում էին «Շաքրո՛ո», և մեր սիրտը լցվում էր մի տեսակ տխուր ուրախությամբ, մի տեսակ թախծոտ ուժեղությամբ, ինչ-որ ծանր հույսով: Դեղին, խշշան արտերում թուխ, մերկ տղերքը հնձի էին եղել՝ նրանց տարել էին պատերազմ: Փափուկ սարերի մերկ երամակները քշել էին պատերազմ:

Թի Ջավենը չէր կարողանում ծիծաղել, ծիծաղի փոխարեն թի էր անում. «թի՛... թի՛-թի՛-թի՛»: Դանելանց Արտեմ քեռին շվի ուներ: Նվագել էր պատերազմից առաջ, հիմա չէր նվագում, բայց այդ շվին կար, մերկ ու գեղեցիկ՝ կար այդ շվին, և մենք գիտեինք, որ կա: Երբեմն նավթ ու նավթի պայծառ լույս էր լինում, երբեմն մի կտոր հաց էր լինում... Այո, պատերազմը վերջացել էր, և ռուսաստանների ու գերմանիաների հեռու անհայտություններում արդեն հուշ, հող ու ծաղիկ դարձող ովկորների համար այլևս անհնար էր կնճռոտվել ու կնճիռի վրա դարձյալ կնճռոտվել, և կանաչ, մաքուր մեր սարերում թել առ թել, թելիկ առ թելիկ հյուսվում էր ժպիտը: Ինչպես որ ծաղիկներն են փունջ դառնում, այդ ուրախությունը հյուսվում էր հացի մի շղարշիկ բույրից, մի հատիկ սալորից, մի կտոր քարաղից, նավթի պայծառ ճրագից և այն հուշից, որ զոհվել էին լավերը և որ վերադարձել էին լավերը և որ պատերազմ չէին գնացել դարձյալ լավերը: Քառանց մի քիչ կաղ, մի քիչ շեկ, մի քիչ չեչոտ, բաց բերանը փլթփլթան ծիծաղով, խաշիլի պես, լիքը, մի քիչ ֆսֆսան, մի քիչ ծաղրածու, աչքի բիբն սպիտակ Վանին...

Ոչ մի խորհուրդ չեմ տալու, կարդա՛, մի՛ վախեցիր:

Քառանց Վանին աչքը կկոցում ու բերանը ծռում էր: Մթնշաղի մեջ հոտի եզրին կանգնած.

— Վա՛սկա, հաչ-չի՛,— ծղրտաց Քառանց Վանին, և շեկլո երկարամազ ներին հոտի մեջ շարժվեց, հոտն ինքն իր մեջ շարժվեց, հոտից ելավ և դանդաղ քաշեց հոտն իր ետևից դեպի Գառնաքար: Հովիվներն այդպես էլ ասում էին: Ասում էին. «Հոտը քաշում է»: Ասում էին՝ «քաշիր», և ներին քաշում էր ոչխարի ծանր հոտը՝ դանդաղորեն, ծանրորեն, հանդիսավորությամբ, ինչպես որ իրական ծանրությունն են ձգում՝ թաց, ծանր ուռկանը :

— Վա՛նկա, հաչ-չի՛,— ծղրտաց Քառանց Վանին



# ԲԱՑ ԵՐԿՆՔԻ ՏԱԿ ՀԻՆ ԼԵՌՆԵՐ

ՀՐԱՆՏ ՄԱԹԵՎՈՍՅԱՆ

Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ

և խավար աչքը կկոցած նայեց, մթնշաղի մեջ կրակագույն ներին խաղաց, թպրտաց ու հոտի միջից դուրս նետվեց պարելով, պարելով դեպի Շիշթափ՝ հայերեն Սուրբլուր: Հոտը հոսեց նրա ետևից:

Ներին, այո, առաջնորդ այծն է: Արու, տղա, տղամարդ այծը: Ուլիկ ժամանակ նրանց ամործատում են, այսինքն՝ կոտում, որպեսզի չարթնանան նրանց մեջ տղան ու այծը, այլ ծանրանա նրանց մեջ առաջնորդը, քշողը, դանդաղը, ապա շատ տաք հացով նրանց պոզերը բարձրացնում ու ոլորում են դեպի վեր, և հոտը նրանց քաշում են: Այդ շատ տաք հացը եղել էր, է՛, մեզանից ու պատերազմից առաջ, և նրանք վաղուց էին երկու տարբեր հոտերի առաջնորդներ եղել: Հովիվներին տարել էին պատերազմ, հոտերը խառնել էին, և Քառանց Վանին մթնշաղի մեջ հիմա ոտիցոտ փոխվեց, խավար աչքը կկոցեց ու ծղրտաց.— Վա՛սկա, հաչ-չի՛... Վա՛նկա, հաչ-չի՛,— և հոտը կիսվեց, և նրանք տարան իրենց հոտերը իրենց վաղուցվա Շիշթափ և Գառնաքար:

Մթնշաղի մեջ պառավ շունը սահեց դեպի Շիշթափ, բայց անտեր էր մնում այնտեղ Գառնաքարի հոտը, օրորվեց դեպի Գառնաքար, բայց այնտեղ անտեր էր մնում Շիշթափի հոտը. մթնշաղի մեջ պառավ շունը մնաց մոլոր, մնաց և քարշ եկավ դեպի Վանու ոտքերը: Նա այնքան էր պառավ, որ էլ չէր ծնում: Նա ատամ չուներ: Նա վատ էր տեսնում, չէր տեսնում: Նա հոտի ետևից, հոտի շուրջը, հոտի մեջ քարշ էր գալիս: Երբ հոտի գոյությունը մի պահ մարում էր նրա խավար աչքերի, նրա ցամաք հոտառության, նրա մեռնող լսողության տակ ոչխարապահ շան նրա ներսի ծալքերում, նա խուլ, ինչպես որ մտքի մեջ է լինում, ոռնում ու բողոքում էր, և դա աղիողորմ էր իր մահվան ու կորսված հոտի վրա: Հետո նա գտնում էր հոտը, և վերստին ապրելու նրա ուրախությունը լինում էր դարձյալ խուլ ու լուռ, ինքն իր ներսում: Նա հոտը կորցնելու էր իրոք կամ ոչխարապահ շան իր թաքուն ծալքերից, իր գոյությունն անիմաստ էր տեսնելու և տանելու, անհետացնելու էր ինքը իրեն, նա այդպես էր սատկելու: Նա քսվեց Վանու ոտքերին ու լաց եղավ կիսված հոտի և իր մենակության համար:

— Ի՞նչ է,— ասաց Վանին,— ինչո՞ւ ես լաց լինում: Ասատուրը եկել է,— ասաց Վանին,— մայրդ եկել է,— ծիծաղեց Վանին,— քեզ համար Բեռլին է բերել, ի՞նչ ես ծմրում: Մայո՛ր,— կանչեց Վանին:

— Գնա՛,— ասաց Վանին,— ոչխարդ ո՛ւր է, գնա՛: Դեռ չես սատկել, գնա գտի՛ր ոչխարդ:

— Մայո՛ր,— մթնշաղի մեջ կանչեց Վանին,— Ասատո՛ւր:

Մթնշաղի մեջ Ասատուրը կանչեց.

— Վանի՛... էդ՝ ես եմ մայո՛ր:

—Բեռլինը դու ես գրավել՝ դե եսի՛մ,— բերանը կիսաբաց՝ նրա պատասխանին ականջ պահեց Քառանց ծաղրածուն:

Բանակային վերնաշապկի կրծքին յափնջու տակ մեդալները զնգացնելով՝ Ասատուրն աղջամուղջի մեջ դանդաղ դոփեց դեպի Գառնաքար, և նա հզոր ու պաշտպան էր, և ուրթի երեխաներս այդ պահին, երբ նա գնում էր դեպի Գառնաքար, մեզ փոքր ու պաշտպանյալ զգացինք, մենք հոգոց քաշեցինք ու թուլացած ժպտացինք՝ թե յահա փայտը ծորերի անտառներից եզներով կբերի նա, և եզներն այլևս մեր բոբիկ ոտը չեն տրորի, մեր չոր ծնկին չոր քացի չեն տա, սարալանջերի բուց վերելքներում արևը մեր գլխին այլևս չի խփի, և երբ նա գնում էր աղջամուղջի մեջ մեդալների բրոնզը զնգացնելով դեպի Գառնաքար և Վանին աչքը կկոցեց ու բերանը բացեց՝ «մայո՛ր, շանդ



կանչի», և երբ նա շանը Գառնաքարի փարախից ձեն տալուց առաջ հարցրեց, թե «էդ ո՞ր շունն է» և Վանին ասաց՝ «Չամբարը», և Ասատուրը Գառնաքարի փարախում ծափ զարկեց ու զարմացավ շան պառավության վրա՝ «պա՜ քու տունը շինվի» ե ձեն տվեց Գառնաքարից ուրթ.

— Չամբա՜ր, Չամբա՜ր, հե՜յ Չամբա՜ր...

Եվ Վանին ասաց պառավ շանը, որ լաց էր լինում նրա ոտքերի մոտ, բայց այնքան էր պառավ, որ չէր կարողանում մի կարգին, մի բարձր լաց լինել: Երկուսված հոտի և իր մենակության համար լաց էր լինում թաքուն ծմրոցով ու խուլ կաղկանձով.

— Գնա՛, Ասատուրը կանչում է, գնա՛: Ո՞ւր է քու թևը, թևդ ո՞ւր է,— իսկ թև նշանակում է գիշերվա մեջ նիրհող փարախի այն կողմը, որ հովիվն ախպոր պես հովվաշան պահպանությանն է հանձնում, և պառավ շունը քարշ եկավ գտնելու իր հին, ջահել, զնգուն ժամանակների թևը Գառնաքարի փարախում, և Ասատուրը զրնգաց թավշե երեկոյի մեջ ուրթի, երեխաներիս ու կանանց վրայով Գառնաքարից Շիշթափ իր հին շանը, որ եղել է Բեռլինից, մեդալներից ու Հիտլերից առաջ և լինելու էր այնքան, քանի դեռ հոտի գոյությունը կմնար ոչխարապահի նրա թաքուն ծալքերում,

— Արի՛, հեյ Չամբա՜ր...

Այդ ժամանակ ահա իր վրանի դռանը կծկվեցշտկվեց-կծկվեց ու փղձկաց Լոլանց հարսը.

— Ասատուրն էլ եկա-ա՞վ:

— Ախչի՛,— հավաքվեցին կանայք,— ամո՛թ է, ախչի՛,— ասացին կանայք:

— Ախչի՛,— ասացին կանայք:

— Արժան-անարժան բոլորը եկան:

— Պապանձվի՛ր,— ասացին կանայք:

— Սո՛ւս,— սաստեցին կանայք,— ձե՛նդ:

Եվ ձեռքները ծոցներում նրա շուրջը շարված՝ կանայք նրա հետ լուռ լաց եղան նրա զոհվածի համար, և թավշե երեկոյի՛ համար, և երեխաներիս նիհարության ու մթնշաղի մեջ մեր չռված աչքերի՛ համար, և իրենց հետ կանայք նրան ուրախացրին Ասատուրի համար, որ ողջ-առողջ, բրոնզի զնգոցով, դոփդոփելով եկել էր, է՜, բեռլիններից ու եվրոպաներից... Եվ այդ ժամանակ Վանին կանչեց ուրթի ու կանանց վրայով Շիշթափից Գառնաքար.

— Մայո՜ր:

— Հե՜յ,— Գառնաքարից Շիշթափ՝ կարծես թե Բեռլինից Ահնիձոր՝ կանչեց Ասատուրը:

— Էդ մեդալներիցդ մինն ի՛նձ տուր, էլի՜:

Լոլանց հարսի դռանը կանայք ասացին.

— Սո՛ւս, ախչի՛, մի տեսնենք խելքը տե՞ղն է ետ եկել, թե...

Շիշթափից Գառնաքար Վանին դարձյալ կանչեց.

— Էդքան մեդալն ինչի՞դ է պետք, մինն ի՛նձ տուր, էլի՜:

Ասատուրը չէր պատասխանում: Նա այնտեղ շլվել էր իր մեդալն ուրիշին տալու կարելիության, անկարելիության արանքում, և մենք լսեցինք Վանու փլթփլթան ծիծաղը, ասես մթան մեջ աղբյուրը խեղդվում էր:

Իր Գառնաքարից Ասատուրն ասաց.

— Ի՞նչ ես անելու:

«Կախելու եմ», «կպցնելու եմ», «բա էդքանը քո ինչի՞ն է պետք»,— Վանու պատասխանը մտածեցինք երեխաներս, բայց Վանին լուռ էր, կանայք լուռ էին, մթնշաղի մեջ Շիշթափը լուռ էր, կարծես թե բան էր պատահելու և ամեն ինչ փշաքաղվում էր: Պառավ ոչխարապահը խուլ ռռնաց Գառնաքարի իր թևից ու սսկվեց, կարծես խեղդեցին, հետո երեկոն լցվեց հազարավոր ոտքերի կճղահարմամբ, և դա խուլ երկրաշարժի նման էր:

Թուրքի քոչը գալիս է:

Գալիս էր, ծծաշարը կախ՝ թուլաների մեջ թուրքին ետուառաջ անելով գալիս էր երկարուկ կարմիր ղանջղ շունը, և ետևից գալիս էր լայն, խիտ, կեղտոտ, հոգնած հոտը:

Վանին առավ թուրքի բարևն ու ծիծաղեց.

— Ժողովո՛ւրդ, զգո՛ւյշ կացեք, բան չգողանան:

Հոգնած թուրքը թույլ ժպտաց ու անցավ. իբր թե ինքը հասկանում է, որ հանաքչին հանաք է անում

սավեթական իշխանությունից առաջ էղած-չեղած էդ ղայդի բաների վրա:

Հոտը նրա ետևից մղվում ու մղվում էր, խիտ, կեղտոտ, հոգնած, խուլ՝ կարծես միջնադարից էր գալիս, և նրա անվերջությունը գնում, ոլորվում էր միջնադարի անհայտություններում: Մեր սարերի մաքուր անձրևները ամբողջ կանաչ ամառ լվանալու էին տափաստանների նրա կեղտը, և այդ նույն հոտը մեր փափուկ սարերում լինելու էր ամպի չափ սպիտակ, իսկ հիմա մղվում էր խիտ, կեղտոտ, հոգնած, խուլ, և իմ թմբկաթաղանթները գվվում էին:

Վանին չկար:

Հոտը հոսեց, ավարտվեց, հոտը վերջավորվեց կովերով թե եզներով, որոնց մեջքին խուրջիններ էին, խուրջինների մեջ՝ երեխաներ, որ բաց աչքերով նայում ու չէին տեսնում, քունները տանում էր: Եկավ, մեր ուրթի մոտ աղեղ տվեց անցավ, ու դարձյալ ճանապարհ մտավ քոչից ետ ընկած կարմիր ոչխարապահը:

— Գողություն չեղա՞վ, ժողովո՛ւրդ,— աղջամուղջի մեջ կանչեց Վանին, բայց նման բաներ եղել էին հնում, երբ դեռ սավեթական իշխանություն չէր, ղաչաղները ավազակներից էին գողանում, ավազակները՝ ղաչաղներից, ղաչաղներն ու ավազակները միասին՝ խեղճերից, և գողության անունը կտրիճություն էր:

— Վանի՜,— կանչեց ու Գառնաքարի իր մթան մեջ ծիծաղեց Աստուրը, և մենք հասկացանք, որ գողություն, գողության պես մի բան ուրթի մոտ աղջամուղջի մեջ պատահել է:— Վանի՜,— ծիծաղեց Աստուրը, և մենք հասկացանք, որ գողության պես մի բան ինքը Վանին է արել: Ես հիշեցի թուրքի հոգնած քելքն ու խուլ բարևը, ծծերը հատ-հատ կախ երկարուկ կարմիր ղանջղին՝ ետուառաջ ընկնող թուլաների մեջ, հոտի լայն, խիտ, կեղտոտ զանգվածը, բարձած կովերին ու խուրջինների երեխաներին, կարմիր շանը, որ հոտից ետ էր ընկել, ստվերի պես եկավ, վազքով աղեղ տվեց անցավ ուրթն ու մտավ ճանապարհ, և դարձյալ հիշեցի երկարուկ կարմիր ղանջղի կարմիր լակոտներին, որ մորից ետուառաջ էին ընկնում, կանգնում նայում էին ու դարձյալ վազում: Նրանք չգիտեին ուր են գնում: Մայրը գնում էր, և իրենք գնում էին: Թուրքը գնում էր, մայրը գնում էր, իրենք գնում էին, ոչխարը գալիս էր: Խուրջինների միջից նրանց նոր էին հանել, այլևս քիչ ճանապարհ կար, իրենց ոտքով նրանք կարող էին տեղ հասնել:

— Վանի՜,— կանչեց Աստուրը:

Բայց թուրքը ետ էր եկել, ուրթի գլխին ճանապարհի ոլորանում կանգնած՝ նայում էր: Բան չէր ասում, կանգնել ու նայում էր մեր ուրթին: Լուռ նայում էր մեր ուրթին, մենք լուռ նայում էինք նրան:

— Հե՜յ,— կանչեց Վանին:

Թուրքը լուռ էր, հետո քայլ դրեց ու ասաց՝ հեչ:

— Եսի՞մ,— կանչեց Վանին:

Վանին յափնջին գցեց ու կաղալով ընդառաջ գնաց նրան: Նա մահակով էր, և Վանին մահակով էր, բայց կռիվը և էդտեսակ բաները եղել էին սավեթական... Վանին ետ՝ յափնջուն նայեց, և ես սկսեցի կողքի-կողքի, մի քիչ-մի քիչ, քայլ-քայլ, կողքի-կողքի...

Վանին հասավ թուրքին, և թուրքը հասավ Վանուն, Վանին և նա իրար դեմ կանգնեցին:

— Հը՛,— ասաց Վանին:

— Հեչ,— ասաց թուրքը:

Այդ ժամանակ ես յափնջու մոտ էի: Յափնջու մոտ ես մի քիչ նստեցի, իբր թե վաղուց էի այդպես մթընշաղի մեջ աչքերս չռել, հետո պառկեցի յափնջու մոտ և, անզգայանալով, բոլորից ու ինձանից թաքուն ծոցս առա այդ խլրտուն, փափուկ, դունչները սառը... Ես սկսեցի կողքի-կողքի, մի քիչ-մի քիչ, քայլ-քայլ, կողքանց-կողքանց հեռանալ յափնջուց: Նրանց ճանկերը, նրանց թաց դնչերի հպումը իմ մերկ փորին տհաճ էր: Ես հասա մեր վրաններին, վրանների արանքներով, կեռմաններով մտա մեր վրանը, խցկվեցի թախտի տակ: Եվ այդ ժամանակ Վանին թուրքին ասաց.

— Մախլասըն,— իբր թե՝ բարև:

— Ամոթ է,— ասաց թուրքը:

— Սան մանըմ դոստում, ման սանըն դոստում. ինչ ամոթ, դու իմ բարեկամն ես, ես քո բարեկամն եմ, նյա այիբ,— ասաց Վանին և բերանը բաց արեց:

— Թուլեքը դուր,— ասաց թուրքը:



— Չափալաղդար,— ասաց Վանին: Իմ թախտի տակ ես այդ բառը չհասկացա, և այդ ժամանակ թուրքըն ասաց.

— Որ չգիտես՝ թուրքերեն մի՛ խոսիր:

— Բիլերա՛մ,— ասաց Վանին :

— Դե որ գիդես՝ լամուկլարը մանավուր,— ասաց թուրքը:

— Բիլմերա՛մ,— ասաց Վանին,— հեչ բիլմերամ:— Իբր թե՝ չգիտեմ, իսկի չգիտեմ:

— Սա՞ն,— ասաց թուրքը,— դո՞ւ չգիտես:

— Ման,— ասաց Վանին,— ես չգիտեմ:

— Ամոթ է,— ասաց թուրքը:

— Էս մեր սարերն են, բարով եք եկել մեր սարերը,— ասաց Վանին,— էս Շիշթափն է, են՝ Գառնաքարը, նյա թուլա,— ասաց Վանին:

— Շան էրգու լագրդը,— ասաց թուրքը:

— Բա որ գիտես՝ ինչո՞ւ ես խոսում,— ասաց Վանին:

— Վանի՛,— կանչեց Ասատուրը:

— Մայոր դըր,— ասաց Վանին:— Բեռլինն ինքն է գրավել, Բեռլինըն բիլերսա՞ն:

— Բիլերամ,— ասաց թուրքը:

— Բա որ գիտես 'ինչո՞ւ ես խոսում,— ասաց Վանին:— Շուն է, վեցը չի ծնել՝ հինգն է ծնել, բե՛շ,— ասաց Վանին:

— Դորդ,— ասաց թուրքը,— դու էրկու հատն ես գողացել:

— Ամոթ է,— ասաց Վանին,— էդ ղայդի բաները սավեթական իշխանությունից առաջ են եղել, ի՞նչ գողություն,— փեշքեշ դըր:

— Փեշքեշ չեմ անում,— ասաց թուրքը,— չեմ նվիրում:

— Ի՞նչը չես փեշքեշ անում,— ասաց Վանին:

— Թուլաները,— ասաց թուրքը:

— Ի՞նչ թուլա,— ասաց Վանին:

— Շան լագողները, որ գողացել ես,— ասաց թուրքը:

— Ի՞նչ գողություն,— ասաց Վանին:

— Որ գողացել ես շան լագողները՝ է՛դ գողություն,— ասաց թուրքը:

— Չափալաղդար,— ասաց Վանին:

— Հեչ ամոթ չունես,— ասաց թուրքը,— յոխտուր, չունքես:

— Ի՞նչ ամոթ,— ասաց Վանին:

— Որ դու չունես՝ էդ ամոթ,— ասաց թուրքը:

— Դաշտի գյուղերից, է՛, եկել ես, բեզարած մարդ ես, ոնց չես ալարում՝ երկու լակոտի համար էդքան խոսում ես,— ասաց Վանին:

— Աշնանը դրանք շներ են լինելու,— ասաց թուրքը,— տո՛ւր:

— Հիմա ամառ է,— ասաց Վանին:

— Հետո աշուն է գալու,— ասաց թուրքը,— տո՛ւր:

— Ի՞նչ տամ,— ասաց Վանին:

— Թուլաները:

— Որտեղի՞ց:

— Յափնջու տակից:

— Գնա վերցրո՛ւ,— ասաց Վանին,— բայց էդ բարեկամություն չեղավ:

— Աշնանը դրանք շներ են լինելու,— ասաց թուրքը,— մի՛ նեղացիր:

— Տա՛ր,— ասաց Վանին,— աշնանը դրանք շներ են լինելու:

Լակոտները փորիս սեղմած՝ իմ թախտի տակ ես քարացա: Թուրքը լուռ էր, հետո ասաց.

— Նայած ով կպահի:

— Նայած ով կպահի,— ասաց Վանին:

— Պահողը գիտի,— ասաց թուրքը:

— Ես լավ չոբան եմ,— ասաց Վանին,— կովի էս չորս տարում գիլին մի ոչխար չեմ տվել, մի ոչխար չեմ կորցրել:

-- Գտե՞լ,— ասաց թուրքը,— իսկ գտե՞լ:

— Մենք ոչխար չենք գտնում,— ասաց Վանին,— մենք լակոտ ենք գտնում, էդ էլ էն ժամանակ, երբ տեղներս նեղ է լինում: Ունեցածներս մի պառավ շուն է, հայ-հայը գնացել, վայ-վայն է մնացել:

— Սաղ օլ,— ասաց Վանին,— դու էլ:

Իմ թախտի տակ ես հոգոց քաշեցի, և կանայք այդ ժամանակ Լոլանց հարսի դռանը ձեռքները ծնցներում, երամի պես, ինչպես թռչունն է շարժվում-շտկվում, ոտից-ոտ փոխվեցին և բոլորը միաժամանակ մտածեցին, որ Վանին լավն է և Էոլանց Ջարիկը՝ նույնպես:



— Վանի՜,— կանչեցին կանայք:
Հետո աղջամուղջի մեջ թուրքը խառնվում էր ճանապարհի մթանը, կաղ ոտի վրա Վանին շուռ եկավ:
— Վանի՜,— ծիծաղեցին կանայք,— խի՞ ես էդքան լավը:
— Լավն ե՞մ որ,— ասաց Վանին:
— Շատ ես լավը,— կանչեցին կանայք:
— Բա որ լավն եմ,— ասաց Վանին,— դուք ինչո՞ւ չեք լավը:
— Մե՜նք էլ ենք լավը,— կանչեցին կանայք,— մեր մեջ մի լավը կա, Վանի՜, մի շատ լավը կա, դե՜սն արի:
— Էդ ո՞վ է, որ ես չեմ նկատել,— աչքը կկոցած ու բերանը կիսաբաց՝ սպասեց Վանին:
— Էավ չես տեսնում՝ չես նկատել,— ասացին կանայք:— Զարիկը:
— Լոլա՞նց,— հարցրեց Վանին:
— Լոլանց,— ասացին կանայք և սպասեցին:
— Ոչխարս անտեր է,— ասաց Վանին:
— Զավե՜ն,— կանչեցին կանայք,— Զավե՜ն, Զավե՜ն: Ա՜յ տղա, Թի՜,— ջղայնացան կանայք:
— Վանի՜,— իրենց վրանում արթնացավ Զավենը,— ուզում են պսակեն՝ չգնաս,— ծիծաղեց Զավենը:
— Էդ՝ քե՞զ ով է բանի տեղ դնում, տո Թի՜,— ոչ էն է բարկացան ոչ էն է սիրեցին իրենց Զավենին կանայք:— Դու քու փե՜տն առ ու գնա ոչխարդ:
— Պսակում են, Վանի՜, չգնաս,— ծիծաղեց Զավենը:
Ձեռքները ծոցներում՝ կանայք մի պահ մոլորվեցին, ապա.
— Տո ես քո գլո՜ւխը թաղեմ,— խմբովին, երամի պես, քայլ դրին կանայք,— տո, Թի՜,— այդ մթան մեջ քարուփետ փնտրեցին կանայք: Զավենը փախավ ծիծաղելով՝ «թի՜-թի՜-թի՜-թի՜», և կանայք նրա ետևից փետ շպրտեցին:— Ոչխարդ ո՞ւր է:
— Վանի՜,— շուռ եկան կանայք,— դե՜սն արի:
Վանին լուռ էր, ուրթը երեկոյի մեջ լուռ էր, հետո Վանին թուքը կուլ տվեց, թքի հետ կարծես աղամախնձորը կուլ տվեց ու բան ասաց:
— Վանի՜,— Շիշթափի փարախից կանչեց Զավենը,— պսակում են՝ փախի՜ր:
— Բա երեխե՞քը,— ասաց Վանին:
— Երեխեքն ի՞նչ,— չհասկացան կանայք:— Երեխեքը Շամուտի ուրթում տատի մոտ են, մի տասն օրից կգնաք կբերեք:
— Չէ՜,— ասաց Վանին,— բա երեխե՞քը:
— Բա երեխեքը որբ մնա՞ն,— ասացին կանայք:
Վանին լուռ էր:
— Վանի՜, խի՞ ես էդքան լավը,— ասացին կանայք:
— Էդ ո՞ւմ համար ես էդքան լավը,— ասացին կանայք:
— Վանի՜, շապիկդ մաքուր կլինի, շորերդ մաքուր կլինեն,— ասացին կանայք:
Նրանք նրան շրջապատեցին, իրենց երամի մեջ նրան խոսելով-խոսխսելով, քաշելով-հրելով, ծիծաղելով-լացելով, տարան Լոլանց հարսի դուռը, ներս հրեցին ու դուռը դրսից փակեցին: Լոլանց հարսը դարձավ Քառանց հարս...

*(Շարունակելի)*




# Ուսուցչիս

*ԳՈՒՐԳԵՆ ՍՏԱՄԲՈԼՑՅԱՆ*

Դու ինձ տվել ես ավյունը սրտիդ,
Լույսը աչքերիդ, սևը մազերիդ,
Եվ ողջ ազնիվը՝ քո մեջ կուտակված,
Դու մարդ դառնալու ճամփան ես նշել,
Ուղղել հայրաբար
Արարքներս չար...
Իսկ դու չես փոխվել,
Դու նույնն ես էլի՝ բարի և շռայլ,
Արևոտ հոգիդ
Յրև է բաշխում մատաղ ծիլերին,
Եվ դպրոցական նեղ արահետից
Հանում է կյանքի արևոտ ճամփան...
Դեռ ինչքա՜ն դալար, երերուն շիվեր
Քեզանով՝ հզոր ծառեր կդառնան...




# ՆԵՐՍԵՍ

*ԱՍԱՏՈՒՐ ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ*

Այս անունը դուք անշուշտ լսել եք, բայց չգիտեք նրա մասին այն ամենը, ինչ գիտեմ ես: Եկեք ծանոթացնեմ ձեզ նրան, եկեք միասին գնա՛նք, գնա՛նք ու հանդիպենք նրան: Դա, ճիշտն ասած, իսկական հանդիպում չի լինելու, որովհետև նա մեռել է մեզանից 800 տարի առաջ, դա կլինի երևակայական հանդիպում:

Դեհ փորձենք: Բայց այն էլ ասեմ, որ մենք պիտի կատարենք ամենաքիչը երևակայական երկու ուղևորություն. մեկը՝ ժամանակի միջով, իսկ մյուսը՝ աշխարհագրական տարածությունների:

Ժամանակի միջով գնալու համար պիտի սկսենք 1974 թվականից և մտքով տեղափոխվենք 1973 թվականը, այնտեղից՝ 1972 թվականը, այնտեղից՝ 1971 թվականը, այնտեղից՝... արդեն ինքներդ կարող եք շարունակել և այդպես՝ մինչև 1173 թվականը, երբ մեռավ Ներսես Շնորհալի մեծ բանաստեղծը: Ուստի եկեք մի փոքր նեղություն քաշենք և մի փոքր էլ շարունակենք մեր ուղևորությունը, որպեսզի նրան հանդիպենք ողջ ու առողջ, խոսենք հետը և լսենք ձայնը:

Ասենք թե հասանք 1172 կամ 1171 թվականը կամ մի քիչ էլ հեռուն. բայց որտե՞ղ, աշխարհի ո՞ր կողմում պիտի որոնենք նրան, ո՞րն է նրա հասցեն: Ա՛յ, հենց այդ պատճառով էլ մենք պիտի դիմենք մեր երկրորդ ուղևորությանը՝ աշխարհագրական տարածությունների միջով: Իսկ հասցեն ես գիտեմ. Հռոմկլա. այսպես էր կոչվում այն բերդաքաղաքը, որտեղ ապրեց, մեռավ և թաղվեց մեծն Ներսես Շնորհալին: Իսկ Հռոմկլա տանող ճանապարհները շատ են. եկեք մենք ընտրենք դրանցից մեկը, մտքով տեղափոխվենք պատմական Հայաստանի արևմտյան կողմերը, որոնենք Եփրատ գետը և նրա հոսանքի ուղղությամբ գնանք դեպի հարավ: Ահա այդպես գնալո՜վ, գնալո՜վ, մի օր Եփրատի ժայռոտ ափերին մեր առջև կերևան Հռոմկլայի խորտակված բերդապարիսպները:

Ասենք թե երևացին, և մենք ժայռերն ու բարձրադիր լանջերը մագլցելով հասանք Հռոմկլայի ավերակներին: Այնտեղ էլ մեծ բանաստեղծին չենք տեսնի, եթե մոռանանք մեր առաջին ուղևորության պայմանը՝ 1172 թվականը կամ 1171 թվականը կամ մի քիչ էլ հեռուն: Ահա հենց այդ ժամանակ այդտեղ կլինի շեն ու կանգուն Հռոմկլան:

— Ովքե՞ր եք, ո՞ւր եք գնում,— կհարցնեն գլխավոր մուտքի մոտ կանգնած երկու սպառազեն հայ զինվորներ:

— Պիոներներ ենք, Երևան քաղաքից, Սովետական Հայաստանից, գնում ենք Շնորհալի պապիկի մոտ:

— Համեցե՛ք, բայց դուք պետք է նրա մոտ գնաք հանելուկների ներքանցքով:

— Ինչպե՞ս թե հանելուկների...

— Այո՛, սիրելի՛ երեխաներ, որովհետև դեպի նրան տանող ուղիները շատ են. մեկով՝ իշխաններն են գնում, մյուսով՝ օտար երկրների ներկայացուցիչները, երրորդով՝ վաճառականները, չորրորդով՝ հոգևորականները, հաջորդով՝ գյուղացիները... Դուք պիտի գնաք հանելուկների ներքանցքով:

Իսկ դա գիտե՞ք ինչ է նշանակում. նշանակում է, որ մենք պիտի կատարենք երևակայական մի ուրիշ ուղևորություն ևս՝ այս անգամ հայկական հանելուկների միջով: Դա շատ հետաքրքրական կլինի: Անհրաժեշտ է միայն մտքով պատկերացնել հայերեն գրված բոլոր հանելուկները՝ որպես տնակներ շարված փողոցի երկու կողմերի վրա՝ ըստ իրենց ծննդյան թվականների: Ահա այդ փողոցով, նոր գրված հանելուկներից դեպի ավելի հին հանելուկները քայլելով, կգնա՜նք, կգնա՜նք և նորից կհասնենք Հռոմկլա, նորից Շնորհալի պապիկի մոտ, որովհետև հայերեն գրված ամենահին հանելուկները նա է գրել:

— Բարո՜վ եք եկել, սիրելի՛ թոռնիկներս,— ու-

# Շ Ն Ո Ր Հ Ա Լ Ի

րախությամբ կբացականչի նա, կհուզվի, կարտասվի և 800-ից ավելի տարիների կարոտով կգրկի բոլորիս: Հետո կխաղաղվի և կասի.

— Հանելուկնե՞ր... ինչքան ուզեք: Իմ գրածները 300-ից ավելի են, ես կարող եմ ամեն մեկիդ մի քանի հանելուկ առաջարկել:

Մենք կաշխուժանանք, կպատրաստվենք լսելու, իսկ նա, մոտ կանչելով առաջին շարքում կանգնածներից մեկին, կասի.

— Հապա՛, իմ սիրելի՛ Լույս, այն ի՞նչն է որ՝

Խոսում է, բայց չէ կենդանի,
Ճրջում է, բայց ոտքեր չունի.
Արքայի մոտ, եթե ուզի,
Կերթա ազատ ու կխոսի:

Փոքրիկը, որին Լույս կոչեց Շնորհալի պապիկը և հանելուկ առաջարկեց, կմտածի, կդժվարանա, կնայի Շնորհալի պապիկի աչքերին և այնտեղ տեսնելով պատասխանը, ուրախությամբ կբացականչի.

— Գի՛րքն է, պապի՛կ, գի՛րքը...

— Այո՛, ապրե՛ս, թոռնի՛կս, ճիշտ լուծեցիր,— ներքին հրճվանքով կասի Շնորհալի պապիկը և այս անգամ կդիմի ուրիշին.

— Հապա՛, մո՛տ եկ, իմ սիրելի՛ Լույս և լուծի՛ր այս հանելուկը.

Քանդակողից նա՝ իմաստուն,
Մաղկանց փոշուց շինում է տուն,
Քաղցրություն է լեզվից կաթում,
Աչքին բնավ չի գալիս քուն:

Փոքրիկը, որին նորից Լույս կոչեց Շնորհալի պապիկը, հանկարծ օդում կտեսնի մի բզզացող մեղու և իսկույն կլուծի հանելուկը.

— Մեղո՛ւն է, պապի՛կ, մեղո՛ւն...

— Այո՛, ի՛մ խելոքս, ճիշտ լուծեցիր...

Բոլորս կուրախանանք, իսկ Շնորհալի պապիկը մոտ կկանչի ուրիշին և կառաջարկի նոր հանելուկ.

— Այս հանելուկը մի քիչ դժվար է լուծվում, հապա՛, փորձի՛ր, իմ թանկագի՛ն Լույս.

Քայլում է վեցով,
Թռչում է չորսով.
Սուրում է երկնքից շառաչուն ամպի պես,
Հագնում է ծիրանի զգեստներ գեղատես:
Ճամփեքին գնդեր է շինում,
Հրելով առաջ է տանում.

Ո՞վ իմանա՝
Թե նա
Որտեղի՞ց է գալիս և ո՞ւր է ընթանում:

Իսկապես դժվար հանելուկ, փոքրիկը չի կարողանա լուծել, կնայի Շնորհալի պապիկին, իսկ նրա աչքերում՝ պատասխանի փոխարեն արցունքներ կտեսնի:

— Պապի՛կ, իսկ դու ինչո՞ւ ես լալիս,— կհարցնի նա:

— Ես չեմ լալիս. ես միայն հիշում եմ այդ հանելուկն ասողին: Նա մշեցի մի գաղթական էր, թողել էր տուն, հայրենիք, փախել, եկել էր այս կողմերը և որպես ժառանգություն իր հետ ամբողջ հայրենիքից այս հանելուկն էր բերել, այս թանկ, այս հողոտ ու շաղոտ հանելուկը և...

Բզե՞զն է, փոքրիկս, այս հանելուկի իմաստը՝ բզե՞զն է՝ իր վեց ոտքերով, չորս թևերով՝ Մուշի ճանապարհների վրա... Հեռո՛ւ-հեռավոր հայրենիքի ճանապարհների վրա...

— Իսկ դու, պապի՛կ, մեզ համար, հանելուկներից բացի, ուրիշ ի՞նչ ես գրել:

— Ձեզ համար,— կասի պապիկը,— ես շատ բանաստեղծություններ եմ գրել, բայց կուզեի հիշեցնել «Խրատք»-ը, խրատները:

Հետո, նա դարակի վրա շարված գրքերի մեջ



կփնտրի ու կգտնի մի հաստափոր, կաշեկազմ հատոր և կմեկնի մեզ.

— Այստեղ են, գտե՛ք և կարդացե՛ք:

Դուք կվերցնեք այդ գիրքը և զարմանալով միմյանց կնայեք. տառերը հայկական կլինեն, բայց բառերն անծանոթ կամ կիսածանոթ. զարմանալի հայերեն... իսկ տպագրությո՞ւնը...

— Ո՛չ, սիրելի՛ փոքրիկներ,— հարկ կլիներ բացատրել. այն ժամանակ տպագրություն չկար, բոլոր գրքերը ձեռքով էին գրված, լեզուն էլ հին հայերեն էր:

Ուստի կմնար փնտրել խրատները և ծանոթանալ նրանց:

> Ծովի պես խոր միտք ու իմաստ՝
> Հավաքված է գրքերում հաստ,
> Ճարիր մտքի դու առագաստ,
> Ուսման նավորդ եղիր պատրաստ:

Շնորհալի պապիկը կժպտար և կասեր՝ դա բոլորը չէ: Կկարդաք բոլոր խրատները, և նա էլի կասի, թե դա բոլորը չէ: Էլի՝ ինչ-որ հանելուկ: Եվ կպարզվի, որ Շնորհալի պապիկի այդ բոլոր խրատները գրված են հայոց այբուբենի տառերի հերթական կարգով: Առաջինը՝ սկսված է «ա»-յով, երկրորդը՝ «բ»-յով և այսպես մինչև վերջին տառն ու վերջին խրատը: Մեր ծանոթացած խրատն էլ կլինի «Ծ» տառով սկսվողը: «Ծովի պես խոր միտք ու իմաստ...»

— Ի՜նչ լավ պապիկ ես,— կասենք ուրախացած բոլորս:

— Ի՜նչ լավ թոռնիկներ եք, ի՛մ Լույսեր,— կասի նա:

— Իսկ ինչո՞ւ Լույս, չէ՞ որ մենք մեր անուններն ունենք, պապի՛կ, իսկ դու բոլորիս էլ կնքում ես Լույս անունով... Լույս հա՜ Լույս:

Պապիկը կժպտա.

— Դա իմ հին սովորությունն է. ես միշտ էլ բոլոր մարդկանց այդպես եմ կոչել՝ Լույս, ամեն մարդու մեջ տեսնելով լույսի և արևի ճառագայթներ: Ամեն մարդ ծնվում է որպես լույս... Իսկ դուք իսկական լույսեր եք:

Ես մի ճանապարհ էլ գիտեմ Շնորհալի պապիկի մոտ տանող: Դա իրական ճանապարհ է: Դրա համար երևակայական ուղևորություն չի պահանջվում, այլ՝ սովորական, բնական:

Եթե դուք Երևանից դուրս եք ապրում՝ կգաք Երևան, իսկ եթե Երևանում եք ապրում՝ կքայլեք դեպի Լենինյան պողոտան: Կքայլեք ոչ թե դեպի հարավ, այլ դեպի հյուսիս, և պողոտայի վերջում, բարձունքի վրա, ձեր առջև կկանգնի Մաշտոցի անվան Մատենադարանը: Դուք կմոտենաք նրա մուտքին, այնտեղ կանգնած կլինեն երկու միլիցիոներ, որոնք ժպտալով կհարցնեն.

— Ո՞ւր եք գնում և ո՞ւմ մոտ:

— Գնում ենք ցուցասրահ՝ Ներսես Շնորհալու...

— Համեցե՛ք,— ուրախությամբ կընդհատեն ձեզ միլիցիոներները, և դուք ներս կմտնեք ծանոթանալու ոչ միայն Ներսես Շնորհալու, այլև շատ ու շատ անվանի բանաստեղծների, հռչակավոր գիտնականների, տքնաջան գրիչների, հանճարեղ նկարիչների և ուրիշ մեծությունների հետ, որոնց մասին դուք այսօր համարյա ոչինչ չգիտեք:

Նրանք այնտեղ են, մեր Մատենադարանում:

Նրանք սպասում են ձեզ, նրանք չեն կարող չսպասել ձեզ:

## ՄԵՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐԻՆ

Ձեր ուշադրությունն ենք հրավիրում Ներսես Շնորհալու ավելի բարդ ու դժվար լուծվող մի հանելուկի վրա, որն առաջին անգամ լուծեց ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը՝ Ներսես Շնորհալու մահվան 800-րդ տարեդարձի հանդիսավոր նիստի բացման խոսքի մեջ: Ահա բնագիրն այնպես, ինչպես որ կա, այսինքն՝ իր հին լեզվով և հին ուղղագրությամբ.

> Նա բարձրանայ Այբէն ի Քէն
> Եւ խոնարհի դարձեալ անդրէն.
> Ամէն տառն հինգ օր՝ իւրմէն,
> Գնայ զվեց ամիսն ամէն:

Փորձենք այն վերաշարադրել մեր օրերի լեզվով.

> Բարձրանում է Ա-ից Ք-ին,
> Եվ իջնում է Ք-ից Ա-ին.
> Տառից-տառը՝ հինգ օր է ճիշտ.
> Վեց-վեց ամսով է գնում միշտ:

Փորձենք էլ ավելի պարզ դարձնել այդ հանելուկի միտքը: Այն ի՞նչն է կամ ո՞վ է, որ Ա-ից բարձրանում է Ք-ին, Ք-ից իջնում է Ա-ին, ամեն տառից մյուսին հասնում է 5 օրում և այդպես ճանապարհորդում է վեց-վեց ամիսներով:

Այս հանելուկի լուծումը կրկնակի դժվարություն է հարուցում. նախ պիտի իմանալ, թե խոսքը ինչի՞ կամ ո՞ւմ մասին է, դրանից հետո պիտի բացատրել, թե ի՞նչ է նշանակում Ա-ից հասնել Ք-ին, իսկ Ք-ից էլ՝ նորից Ա-ին, և, վերջապես, գտնել այն կապը, որ կա այդ բոլորի, 5 օրվա և 6-ական ամիսների միջև:

Թուլիկներին ու ծուլիկներին օգնելու համար կարող ենք ասել, որ Ա-ից Ք, նշանակում է այն ժամանակվա հայոց ամբողջ այբուբենը՝ իր 36 (և ոչ թե 39) տառերով: Տարին՝ կլոր հաշվով այդտեղ ունի 360 օր: Խոսքն էլ արևի մասին է:

Հանելուկի լրիվ պատասխանը կտպագրենք «Պիոներ»-ի հաջորդ համարում:

«ՊԻՈՆԵՐ»-Ի ԽՄԲԱԳՐՈՒԹՅՈՒՆ

ՌՈՒԲԵՆ ՍԱՅՈՒՆՑ

## ԱՐՄԱՏՆԵՐ

Ծառը տնքում է բեռան տակ մրգի,
Իսկ արմատները քնում են հողում,
Նա մերկանում է, զարդարվում կրկին,
Իսկ արմատները տկլոր են հողում:
Ճանճի ապտակից ծառն է տապալվում,
Իսկ արմատներր ապրում են հողում:



## ԱՌԱՋԻՆ ԾԻԼԸ

Ժայռի ճակատին, քարի ճեղքի մեջ
Մի կանաչ ծիլ է լույս աշխարհ եկել,
Ձմռան քամու դեմ նա բռնել է վեճ
Եվ գլխիկը լուռ արևին թեքել:

Մի փոքրիկ ծիլ է ցրտին դիմացել,
Հավատն է ժպտում նրա աչքերից,
Բոլորից առաջ նա է դուռ բացել
Ու մի ողջ գարուն բերել նրանից:



## ԱՆՏԱՌԸ

Երաշտը հրե շնչով մոլեգին
Տոթ անապատից խուժեց ամենուր,
Օդը շիկացավ, նահանջեց քամին,
Արտերում տիրեց տագնապ ընդհանուր:

Խորշակն այդ, գուցե, մեծ չարիք դառնար,
Սով բերեր, պտուղ չտար ոչ մի ծառ,
Թե նրա առաջ պատնեշ չդառնար
Մեր ձեռքով տնկած մի կանաչ անտառ:

# ԺԱՄԱՆԱԿԸ ԳՐՊԱՆՈՒՄ

Ժ. ՕՐԼՈՎԱ



Ձմեռային մի մառախլապատ օր, 1510 թվին, Նյուրնբերգ քաղաքի երիտասարդ դատավորը նստած էր արդարադատության պալատի ցուրտ դահլիճում: Սպասում էր մի մարդու, որից հիմա շատ բան էր կախված:

Դատավորի փոքրիկ աղջկա ոտքերը հանկարծ թուլացել էին, իսկ դրանից մեկ օր առաջ կոտրըվել էր աղջկա սիրելի լարովի տիկնիկը: Բժիշկները գտան, որ աղջկա հիվանդության և տիկնիկի խափանվելու միջև մոգական կապ կա: Խորհրդակցելով, նրանք եկան այսպիսի եզրակացության.

— Նորոգել տիկնիկը, և աղջիկը կառողջանա:

Դատավորը տիկնիկը խնամքով փաթաթեց թաշկինակի մեջ և տարավ քաղաքի լավագույն մեխանիկի մոտ, բայց նա գլուխը տխուր շարժեց.

— Ոչ ոք չի կարող այդ նորոգել: Ճիշտ է, ես գիտեմ մի մարդու, որ գուցե կարողանա օգնել, եթե ուզենա, բայց ես համոզված եմ, որ նա չի ուզենա:

Ծանրով դատավորը կանգնած էր արդեն մի երկհարկանի անշուք տան դռանը և շղթայից կապած ծանր մուրճով բախում էր երկաթակուռ դուռը: Այն բացեց մի կին:

— Վարպետը տա՞նն է և կարելի՞ է արդյոք խոսել հետը:

— Այդ անկարելի է, պարո՛ն: Ահա արդեն երեք տարի է, ինչ ամուսինս պատվեր չի վերցնում

և չի երևում մարդկանց: Ես ինքս էլ նրան համարյա չեմ տեսնում: Արգելել է իր սենյակը մտնել, սպառնում է ծեծել: Իսկ առաջներում, ա՛խր, քաղաքում հայտնի պղնձագործ էր, աշխատում էր նաև իբրև մեխանիկ: Ապրում էինք բարեկեցիկ: Իսկ հիմա նեղվում ենք: Լավ էր, նրա քույրն ամուսնացավ հարուստ դերձակ Կունցերի հետ, բայց փեսան առաջ օգնում էր, իսկ հիմա հրաժարվել է: Ո՞ր օրենքով, ասում է, ես պետք է կերակրեմ անբաններին: Ամուսնուս ի՞նչ կա, պատահում է, որ օրերով յոլա է գնում առանց բերանը բան դնելու:

Դատավորին այլ բան չէր մնում, քան ասել իր անունը, ավելացնելով, որ ներկայացել է դատարանի կողմից, շատ կարևոր գործով:

Տանտիկինը սանդուղքներով սուրաց վերև, և դատավորը լսեց, թե ինչպես նա մի փակ դուռ ջարդելով, ներս ընկավ և բղավեց.

— Դո՛ւրս արի, անհոգի՛, վերջապես արարքներիդ համար պատասխան կտաս: Դատարանից եկել են քո ետևից:

Պղնձագործը հայտնվեց փոքըր-ինչ ուշ, արդեն հագած-կապած, պատրաստ ճանապարհ ընկնելու: Նրա հայացքը երկյուղած էր, բայց վախկոտ չէր:

— Ների՛ր ինձ, վարպե՛տ,— ասաց դատավորը,— քեզ վրա ոչ ոք գանգատ չի տվել: Ես եկել եմ քեզ մոտ իբրև պատվիրատու:

— Իզուր եք նեղություն քաշել, պարո՛ն: Վաղուց ես պատվերներ չեմ ընդունում:

— Սա սովորական պատվեր չէ: Փրկի՛ր իմ աղջկան: Աղաչո՛ւմ եմ քեզ,— բացականչեց դատավորը և պատմեց վարպետին բժիշկների եզրակացության մասին:

Պղնձագործը ուշադիր լսեց և ասաց.

— Թողե՛ք տիկնիկը, եթե կարողանամ նորոգել՝ կնորոգեմ:

— Ի՞նչ գումար ես ուզում, որ թողնեմ իբրև կանխավճար:

— Ես փող չեմ վերցնում:

Ահա դրա մասին էլ հենց մտածում էր դատավորը, արդարադատության ցուրտ կիսախավար պալատում նստած: Չգիտես թե ինչու նա հաստատ համոզված էր, որ Խենլեյնը տիկնիկը կնորոգի և իր աղջիկը կառողջանա: Միայն չէր ենթադրում, թե դա այդքան շուտ կլինի:

Դատավորի մտքերն ընդհատվեցին վարպետի հայտնվելով: Նա լուռ մոտեցավ և տիկնիկը դրեց սեղանին: Տիկնիկը պարում էր: Դատավորը ուրախությունից վեր թռավ և կերկերուն ձայնով հարցրեց.

— Ինչո՞վ կարող եմ քո աշխատանքի համար վարձահատույց լինել:

— Ես միայն մի ցանկություն ունեմ, պարո՛ն: Ինձ հարկավոր է միայն լռություն և միայնություն: Այդ հենց այն է, ինչից ես զրկված եմ իմ ընտանիքում: Կինս ամբողջ օրը լաց է լինում և բարձրաձայն անիծում:

— Ինչո՞ւ ես ուզում մենակ լինել:

Վարպետը խուսափեց պատասխանել:

— Լավ, ես կանեմ՝ ինչ կարողանամ,— ասաց դատավորը:

Պղնձագործը գլուխ տվեց և գնաց:

Դատավորը հիշեց, որ Խենլեյնի քույրը՝ Լուիզան վերջերս ամուսնացել է Նյուրնբերգի ամենամոդայիկ դերձակի հետ, և հրամայեց հետևյալ օրը դերձակին ու կնոջը բերել դատարան:

— Ասա՛ այն բոլորը, ինչ դու գիտես Պետեր Խենլեյնի մասին,— դիմեց դատավորը դերձակին:



— Ամոթ է ասելը, բայց ես հազիվ ծանոթ եմ նրան: Նա չի կամենում ինձ հետ խոսել: Երեք տարի առաջ Խենլեյնը ոչնչով չէր տարբերվում մյուս վարպետներից, քանի դեռ նրա տանը չէր ապրում եկվոր իտալացին՝ մի շատ տարօրինակ, փակ մարդ: Բայց ի՞նչ լավ բան կարելի է սպասել իտալացուց: Նրանք բոլորը կախարդներ կամ ավազակներ են: Իտալացին մի շաբաթ մնաց այստեղ: Խենլեյնի հետ փակվում էին սենյակում, թե ի՞նչ էին անում այնտեղ, միայն աստծուն է հայտնի: Բոլորն ասում են, որ նա չար մարդ էր և պղնձագործին կախարդել է:

— Իսկ դու ի՞նչ կասես,— դիմեց դատավորը Լուիզային:

— Ձե՛րդ ողորմածություն, իմ եղբայրը լավ մարդ է:

— Ահա հենց դրա համար էլ ես ձեզ հրավիրել եմ: Ես ցան-



Նկ. ԱՆԱՏՈԼԻ ՊԱՊԱՆՅԱՆԻ

կանում եմ խնդրել քեզ, Կո՛ւնցեր, որ վերցնես Խենլեյնին քեզ մոտ, տաս նրան տանիք և հաց, բայց պայմանով, որ չփորձեք խախտել նրա մենակությունը:

— Ես ճշտի՛վ կկատարեմ ձեր խնդիրը,— բացականչեց Լուիզան ուրախացած:

— Քանի որ ձերդ ողորմածությունը ցանկանում է այդ, ապա ես նույնպես չեմ առարկում,— քրթմնջաց դերձակը:

— Դե, շատ լավ է:

Դատավորը գործը կարգավորված համարեց, և քանի որ իր աղջիկը մի շաբաթ հետո նորից կարողանալու էր մաև գալ, ապա նա այլևս պատճառ չուներ վարպետի ճակատագրով հետաքրքրվելու:

Անցավ երեք ամիս: Եվ հանկարծ դատական պաշտոնյան, սովորականի պես զեկուցում է մի կալանավորի մասին, որի անունը Խենլեյն է:

— Ինչի՞ մեջ է նա մեղադրվում,— հարցրեց դատավորը:

— Պետեր Խենլեյնը առանց հիմնավոր պատճառի ծեծել ջարդել է Կունցերին:

Դատավորը հրամայեց բերել պղնձագործին: Նա սմքած և գունատ տեսք ուներ, բայց պատասխանեց հաստատակամ.

— Ես չէի ուզում Կունցերին խեղդամահ անել: Ես նրա տունը մաքուր սրտով մտա: Եվ սկզբնական շրջանում ես ինձ լավ էի զգում: Բայց հետո Կունցերն սկսեց լրտեսել ինձ, դրա համար ես հարկադրված եղա...

— Ասածիդ մեջ տրամաբանություն չկա, Խենլե՛յն: Ի՞նչը քեզ ստիպեց այդպես դաժան վարվել Կունցերի հետ:

— Չեմ կարող ասել, դատե՛ք՝ ինչպես ուզում եք:

— Իսկ գիտե՞ս, որ քեզ կըստիպեն ասել:

— Ես կլռեմ, որքան էլ տանջեն:

— Իմ պարտքն է զգուշացնել... Միակ բանը, որ կարող եմ անել՝ մոտեցնել դատավարության օրը:

Վարպետի տխուր հայացքի մեջ սարսափ երևաց.

— Եթե ես կարող եմ համարձակվել ու դարձյալ մի բան խնդրել ձերդ ողորմածությունից, ապա հանուն բոլոր սրբերի, հետաձգե՛ք դատը և թույլ տվեք ինձ բանտում մնալ որքան հնարավոր է երկար և, իհարկե, մենախցում:

— Լա՛վ,— ասաց դատավորը,— ավելին անել չեմ կարող:

Դատավորը խոսքի տերը գտնվեց և կարողացավ դատավարությունը հետաձգել ամբողջ չորս ամիս:

Դատավարության օրը դահլիճում բազմել էին քաղաքային դատարանի անդամները, իսկ դահլիճի կենտրոնում դրված նստարաններին շարվել էին նշանավոր քաղաքացիները: Ժողովուրդը խռնվել, սեղմվել էր ետևում:

Լուիզան հայտարարեց, որ Պետերը երբեք իրեն խելագար չի թվացել և որ ամուսինը արժանի էր ծեծի, որովհետև շարունակ լրտեսում էր եղբորը:

Երբ խոսքը տրվեց Կունցերին, նա ուռած-փքված ելավ տեղից և համոզված, որ մեծ տպավորություն է թողնելու այն, ինչ ասելու է, դանդաղ սկսեց.

— Խենլեյնի խելքը տեղն է, և ամենևին էլ չար ոգու անմեղ զոհ չի նա: Ես հետևել եմ նրան, նա կախարդ է, նա դաշինքի մեջ է գտնվում դևերի հետ: Ես ինքս եմ նրա մոտ դևի ձայնը լսել:

Դահլիճում նստած հարգարժան բյուրգերները խաչակնքեցին իրենց երեսը: Կունցերը մի պահ գոհունակ լռեց, ապա, երբ շշուկները դադարեցին, շարունակեց.

— Հենց որ նրան մեր տուն առանք, ես իսկույն գլխի ընկա, որ այստեղ մի անմաքուր բան կա. փակվում է, երկար ժամանակ դուրս չի գալիս: Մի անգամ նա դուրս եկավ ու ես մտա նրա սենյակը: Եվ տեսա սեղանին մետաղյա մի այնպիսի բան, կողքերը կլոր, իսկ վերևը հարթ: Եվ նրա մեջ մի բան էր հավասար բաբախում: Այդտեղ ես հասկացա, որ կախարդի սարքած բան է դա, մարմնավորված է դև, և այդ դևի սիրտն է բաբախում: Աղոթք անելով, ես վազեցի սեղանի մոտ, խաչակնքեցի դիվային այդ բանը և նետեցի կրակը: Եվ փախա... Կես ժամ անց Խենլեյնը վերադարձավ, դուռը փակեց և սենյակում երկար մնաց: Երևում է, պարզեց, թե ինչ է պատահել դևի հետ: Հետո դուրս թռավ և հարձակվեց ինձ վրա:

Կունցերի ցուցմունքը պղնձագործի դեմ տրամադրեց դատավորներին և բոլոր ներկաներին: Եթե ընդունվեր, որ Խենլեյնը կախարդ է, ապա նրա գործը կհանձնվեր ինկվիզիցիայի դատին, որը դևերի հետ հարաբերություններ ունենալու մեջ կասկածվողներին ենթարկում էր սարսափելի ու տանջալից մահապատժի, մեծ մասամբ վառում էր: Միակ փրկությունը, եթե կար, այն էր, որ Խենլեյնը կարողանար արդարանալ քաղաքացիական դատարանի առջև, հերքելով կախարդ լինելու մեղադրանքը:

— Պղնձագո՛րծ,— դատարանի նախագահը դիմեց Խենլեյնին,— դու մեղադրվում ես դևերի հետ հարաբերություն ունենալու և դևի սիրտ պահելու մեջ:

— Ես ամբողջովին հերքում եմ այդ,— հանգիստ պատասխանեց Խենլեյնը,— երիտասարդ ժամանակ ես եղել եմ Իտալիայում, ուր մտերմացա ֆլորենտացի մի հայտնի արծաթագործ վարպետի հետ: Այդ ժամանակից սկսած՝ ես հրապուրվեցի մեխանիկայով և երազում էի ստեղծել մի սարք, որը ժամանակը ցույց տար ճիշտ այն ճշգրտությամբ, ինչ ճշգրտությամբ ցույց է տալիս աշտարակի վիթխարի ժամացույցը, բայց դրա հետ էլ փոքր լինի այնքան, որ տեղավորվի գրպանում: Իմ առաջին փորձերը անհաջող եղան: Ես վերադարձա Նյուրնբերգ և դարձա մեխանիկ: Անցավ մի քանի տարի, և մի օր էլ հանկարծ մեր դուռը թակեց ֆլորենտացին: Նա բերեց մի ժամացույցի մեխանիզմ՝ պղնձյա կլոր տուփի մեջ տեղավորված: Ժամացույցը չէր աշխատում, որովհետև շատ մասեր էին պակասում: Պարզվում էր, որ մի մեխանիկ, մահվանից առաջ իր աշխատանքը տվել էր նրան և խնդրել գտնել մի վարպետ, որը կարողանա ավարտել իր գործը: Ֆլորենտացին հիշել էր ինձ: Իմ վաղեմի բարեկամը թողնելով այդ անգին նվերը ինձ՝ գնաց: Այդ ժամանակ ես աստված կանչեցի, թողի իմ բոլոր գործերը մի կողմ և կպա դրան: Գործը դանդաղ էր առաջ գնում: Հաճախ էի թերահավատ դառնում իմ ուժերի նկատմամբ: Ինձ շրջապատողները խանգարում էին, մտածելով, թե չար աչք է դիպել ինձ: Ստիպված թաքցնում էի ժամացույցը, որ տանեցիները չջարդեն: Եվ այնուամենայնիվ Կունցերը հաջողեցրեց այդ անել, երբ իմ տարիների աշխատանքը վերջապես ավարտված էր: Ահա այդ ժամանակ վառարանից սաստիկ վնասված ժամացույցը հանեցի ու հասա ծեծեցի նրան, որի համար ներողություն եմ խնդրում: Հիմա իմացե՛ք, ես բանտում հասցրի ժամացույցը նորոգել:

Այս ասելու հետ, վարպետը հանեց գրպանից և խոնարհվելով դատավորներին, մեկնեց գրպանի առաջին ժամացույցը: Ժողովուրդը, մոռացած հարգանքը դեպի դատավորները, պոկվեց տեղից և խիտ օղակով շրջապատեց դատարանի նախագահի սեղանը, որի ափի մեջ էր գտնվում հրաշք գործիքը: Գրպանի ժամացույցը անցնում էր ձեռքից-ձեռք, և բյուրգերները զարմանքով ու հիացած մոտեցնում էին այն իրենց ականջին:

— Մենք քեզ ճանաչում ենք անմեղ,— հանդիսավոր հայտարարեց նախագահը,— վերադարձի՛ր քո տունը և, ոչ ոքից այլևս չթաքնվելով, աշխատի՛ր:

Լուիզան, երջանիկ, փարվեց եղբորը: Շատ էր ուզում նրա օրինակին հետևել ևս մեկը, դա դատավորն էր, որի աղջկա տիկնիկը Խենլեյնը նորոգել էր:

# ԵՐԳԻԾԱԿԱՆ ՄԱՆՐԱՊԱՏՈՒՄՆԵՐ
## (ՆՄՈՒՇՆԵՐ ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԲԱՆԱՀՅՈՒՍՈՒԹՅՈՒՆԻՑ)

### ԼՈՒՍԻՆՆ ՈՒ ԱՐԵԳԱԿԸ

Լուսինն ասաց արեգակին. «Քո որդին եմ ես, ի՞նչ կլինի, որ մի շոր կարես ինձ համար»: Արեգակը պատասխանեց. «Ինչպիսի շոր կարեմ քեզ համար, որ հարմար լինի. ոչ մի օր չես մնում միևնույն չափի»:

### ՍՊԱՌԱԶԻՆՎԱԾ ՄԿՆԵՐԸ





Մկներն ասում են իրար, թե՝ «Մենք ո՛չ զենք ունենք, ո՛չ եղջյուր, դրա համար էլ կատուն մեզ հեշտությամբ բռնում է»: Եվ մկներից ոմանք փայտեր սրելով, կապեցին իրենց գլխներին, որպեսզի երբ կատուն գա, կռվեն նրա հետ և նա չկարողանա իրենց բռնել: Եկավ կատուն: Մկներն իսկույն փախան, մտան ծակը: Այն մկները, որ փայտից եղջյուրներ էին կապել գլխներին, չկարողացան մտնել, և կատուն բռնեց նրանց, կերավ:

### ԻՇԱՏԵՐՆ ՈՒ ԳԱՅԼԸ

Մի մարդ կորցրել էր էշը և տխուր-տրտում շրջելով, բոլորին հարցուփորձ էր անում, թե չե՞ն տեսել արդյոք իր էշը: Գայլն հանդիպում է, հարցնում. «Էդ ի՞նչ եսման գալիս»: Մարդն ասում է. «Ո՛վ գայլ, կորցրել եմ իշուկս և չեմ գտնում»: Գայլն ասում է. «Ո՛վ մարդ, քո էշը ես եմ գտել»: Մարդն ասում է. «Բե՛ր էշս, գտնելու վարձը տամ»: Գայլն ասում է. «Ընկել էր ցեխի մեջ և ես երեք օր չարչարվելուց հետո, հազիվ կարողացա ցեխից հանել ու վարձի փոխարեն կերա նրան. գիտեի, որ աղքատ մարդ ես և վարձ չես կարող տալ»:



### ՀԱՎԱԿՆՈՏ ԱՔԱՂԱՂԸ

Աքաղաղին հարցրին.

— Ինչո՞ւ կտուրի վրա եղած ժամանակ մի ոտդ ծալած, մյուսը հողին հենած ես կանչում:

Աքաղաղը պատասխանեց.

— Որպեսզի կտուրը չփլվի...

*Նկ. ՎԱՂԱՐՇԱԿ ԱՐԱՄՅԱՆԻ*

# ՃՅՈՒՂԸ ԿՈՏՐԱԾ ԽՆՁՈՐԵՆԻՆ

*ԼԻՊԱՐԻՏ ՍԱՐԳՍՅԱՆ*

*Նկ. ՀԱԿՈԲ ՀԱԿՈԲՅԱՆԻ*

Հայրը կացինը թափով իջեցրեց ծառի բնին:

— Թը՞խը՞կ,— լսվեց խուլ տնքոցը:

Արտաշեսը նայում էր հոր լայն թիկունքին, ջլուտ ձեռքերին: «Երևի գյուղում իմ հայրիկից ուժեղ մարդ չկա...» Իսկ ծառի տնքոցը շարունակվում էր:

— Հայրի՛կ, սրա խնձորներն էլ են ամուր ու խոշոր լինելո՞ւ,— կտրվող ծառից քիչ հեռու ծլած շիվը ցույց տալով, ասաց տղան:

— Հա՛, իհարկե, սրա զավակն է, հո ուրիշ տեսակ խնձոր չի՞ տալու:

Տղան լռեց: Հայրը շարունակում էր հարվածները չորացած ծառի բնին:

Երկար էր ապրել ծառը: Գուցե իր պապից էլ առաջ էր աշխարհ եկել. ոչ ոք չգիտեր: Հազար ու մի հուշ ու հիշատակ էր կապված նրա հետ: Հենց թեկուզ անունը՝ Ճյուղը կոտրած խնձորենի:

— Քոռանամ ես, քոռանամ,— պատմում էր տատը:— Ամբողջ մի ամիս երեխաս լաց էր լինում, մղկտում: Անեծքով էի նայում ծառին, քիչ էր մնում կացինն առնեմ, գնամ քոքից կտրեմ:

Արտավազդի հոր մասին էր խոսքը՝ Արտաշեսի:

Փոքր է եղել նա, ինչպես հիմա իր որդին՝ Արտաշեսը: Բարձրացել է ծառը, խնձոր պոկելու: Ճյուղը չի դիմացել, պոկվել է, տղայի հետ ցած ընկել: Կոտրվել է ծառի ճյուղը, իսկ փոքրիկի՝ ձեռքը: Հետո օրեր են անցել, լավացել է տղայի ձեռքը, ամոքվել է նաև



խնձորենու կտրված ճյուղի վերքը, բայց մնացել է հուշը ու ծառը նոր անուն է ստացել՝ Ճյուղը կտրած խնձորենի:

— Հայրի՛կ,— նորից խոսեց Արտաշեսը,— իսկ այս փոքրիկ ծառն էլ է այսքան մեծանալո՞ւ:

— Այո՛,— կարճ պատասխանեց հայրը:

Կացնի հարվածները հեռավոր զանգերի նման ղողանջում էին նրա հոգում, խոսուն պատկերներ դառնում, դառնում կինոնկարի ժապավեն:

...Ցո՜ւրտ ձմեռ է: Դրսում բուքն է շվշվացնում, կաղկանձում, մրթմրթում: Տունը տաք է, իսկ անկողնում վառվում է ինքը: Շուրթերը չորացել են, սառած թեյը տհաճ է, իսկ պաղ ջուր չի կարելի խմել:

— Մայրի՛կ, խնձոր եմ ուզում,— շշնջում է տղան,— Ճյուղը կտրած ծառի խնձորից:

Մայրը թոթվում է ուսերը: Որտեղի՞ց այս ձմեռվա կեսին խնձոր: Այգու ամբողջ խնձորը վաճառել, հաց ու շորի են տվել: Դեղապետի համար մի հատն ինչ է, չի մնացել:

— Քոռանամ ես, քոռանամ,— մրմնջում է տատը,— ախչի՛, որտեղի՞ց հիմա երեխիս համար խնձոր ճարենք,— գլուխը օրորում է տատը, և հանկարծ մի միտք է ծագում գլխում, վեր է թռչում տեղից:

— Էս տարի ո՞ւմ ծախեցինք Ճյուղը կտրածի խնձորները,— հարցնում է տատը:

— Պահեստապետ Մովսեսին,— պատասխանում է հարսը հազիվ լսելի ձայնով:

— Ես գնացի,— ասում է տատը,— ոնց էլ լինի, նրանք դեղապետի համար պահած կլինեն:

Ու տատը գնում է:

Մահճակալի դիմացի պատից նայում է հայրը: Զինվորական համազգեստով է, ուսադիրներով: Հոր աչքերում տխուր մի ժպիտ կա: Ասես խոսում է որդու հետ. «Հիվանդություն է, կանցնի, կլավանաս»: Հոր դեմքը աստիճանաբար կենդանանում է: Սկսում են զրուցել հայր և որդի:

— Դու շա՞տ ես հեռու,— իրեն ամենահուզող հարցն է տալիս որդին:

— Շա՜տ,— պատասխանում է հայրը...

— Իսկ այդտեղ ցուրտ չէ՞, չե՞ս մրսում...

— Շատ է ցուրտ,— ժպտում է հայրը,— բայց դե տղամարդը ցրտից չի վախենա: Ձմեռը կանցնի կգնա: Հետո գարուն կլինի, տաք, ուրախ օրեր:

Տղան ասես թեթևանում է հոր խոսքերից, թռչկոտում: Եթե հայրը ասում է՝ լավ կլինի, ուրեմն՝ լավ կլինի:

Հետո հայրը գրկում է նրան, թռցնում վե՜ր, վե՜ր, մինչև արև: Նա հպարտ է զգում իրեն հոր հետ, ուժեղ, անպարտելի:

— Երեխի տաքությունը կարծես իջել է,— լսում է տղան տատի խոսքերը, ճակատին զգալով նրա շուրթերի հպումը:

Աչքերը բացում է. մայրը երկու խնձոր է դրել կտրված պոնկով ափսեի մեջ:

— Կտրեմ, մի կտոր կե՛ր,— արթնացող որդուն է դիմում մայրը,— սիրտդ հովանա:

Տղան գլխով է անում: Նորից աչքն ընկնում է պատին: Նույն ժպիտով իրեն է նայում հայրը. «Մի՛ վախի, ասում էի, չէ՞, որ լավ կլինես»:

— Հայրի՛կ,— Արտավազդն սթափվում է Արտաշեսի ձայնից,— բա այս փոքրիկ ծառը ե՞րբ կմեծանա, ե՞րբ խնձոր կբռնի:

— Եկող տարի, բալե՛ս, եկող գարնանը կծաղկի և առաջին բերքը կտա:

Տղան ուրախացած ցատկոտում է տեղում:

Արտավազդը նայում է ժառղաշ խնձորենուն. «Պետք է շուրջը չափար կապել, թե չէ անասունները ոտնատակ կտան, կփչացնեն»:

Ճյուղը կտրած խնձորենին հանգիստ պառկել է հողին:

ՊԻՈՆԵՐ-ի փոստից

# ԵՐԿՈՒ ՆԱՄԱԿԻ ՄԱՍԻՆ

Դպրոցական տարիքում բանաստեղծություն են գրում շատերը: Ոմանք գրում են իրենց համար, ցույց չեն տալիս ոչ ոքի: Ոմանք ծրարում են, հասցեագրում այս կամ այն խմբագրությանը: 50 տարեկան դարձած «Պիոներ» ամսագիրը իր գոյության առաջին օրերից իր էջերում տեղ է տվել երեխաների ստեղծագործություններին, տպագրել դրանցից լավագույնները: Այդ երեխաները մեծացել են: Նրանց, ովքեր շարունակել են գրել և բանաստեղծ են դարձել, կարելի է մատների վրա հաշվել: Մյուսները աշխատում են տարբեր բնագավառներում: Եվ դա շատ օրինաչափ է: Երբ «Պիոներ»-ի հոբելյանական համարում արտատպում էինք «Պատկոմում» տպագրված մի գողտրիկ բանաստեղծություն, այդպես էլ չկարողացանք պարզել, թե ով է հեղինակը: Տպագրվելուց հետո միայն իմացանք, որ հեղինակը դարձել է պատմաբան, ճանաչված պրոֆեսոր:

Ես աշխատել եմ իբրև մանկավարժ և գիտեմ շատ երեխաների, որոնք մի երկու ոտանավոր գրելուց պես, համարել են, թե արդեն բանաստեղծ են և աչքաթող են արել բոլոր դասերը, որովհետև նրանց կարծիքով բանաստեղծին ո՛չ պատմություն է հարկավոր, ո՛չ աշխարհագրություն, ո՛չ էլ առավել ևս մաթեմատիկա: Այսինքն բանաստեղծ կարող է դառնալ բացարձակապես անգրագետ, գիտելիքներ չունեցող մարդը: Մինչդեռ բոլոր մեծ բանաստեղծները եղել են իրենց ժամանակի ամենակրթված, բազմակողմանի զարգացած մարդիկ: Ցավոք, «Պիոներ»-ին բանաստեղծություններ ուղարկող դպրոցականներից ոմանք բավարար չգիտեն նույնիսկ իրենց մայրենի լեզուն: Այն լեզուն, որով բանաստեղծություններ են գրում:

Մասիսի շրջանի գյուղերից մեկի 6-րդ դասարանի աշակերտ Դ. Բ.-ն, ահա մեր խմբագրությանն է ուղարկել մի այսպիսի բանաստեղծություն.

«Աշուն է, աշուն
Աշուն է սիրուն,
Արևն է փայլում,
Դաշտերն են պապղում:
Ամեն ինչ փոխվում է
Մրգերն են հասնում,
Ծառերն են դեղնում,
Եվ ոսկեզերծվում:

Եթե միայն բանաստեղծությունը անհաջող լիներ, տողային կպատասխանեինք նամակով, ցույց կտայինք իր սխալները, կասեինք, որ դու ոսկեզօծվելու փոխարեն գրել ես «ոսկեզերծվել» բառը, իսկ դրանք տարբեր բաներ են: Բայց ցավալին այն է, որ խմբագրությանն ուղարկած նրա նամակը լի է ուրիշ աններելի սխալներով: Ահա նամակը ամբողջությամբ.

«Ծանոթագիր

Հարգելի խմբագրություն քանի, որ ես առաջին անգամն է նամակային կապ եմ հաստատում ձեր հետ: Եվ չգիտեմ թե ինչպես սկսեմ նամակիս առաջին տողերը: Ես երկար ժամանակ է ինչ սկսել եմ ինձ համար գրել փոքրիկ ոտանավորներ: Ես լսելով որ կարելի է նաև ոտանավորները նամակով ուղարկել խմբագրություն և տպել թերթերի մեջ: Ես որոշեցի որ, ձեզ ուղարկեմ իմ գրած ոտանավորները: Եվ հույսով եմ որ դուք այն սիրով կնդունեք: Հարգելի խմբագրություն ես սովորում եմ վեցերորդ դասարանում գերազանցիկ: Վերջացնում եմ այս փոքրիկ նամակս և սպասեմ ձեր նամակի պատասխանին և ձեր առաջարկությանը»:

Վեցերորդ դասարանի ոչ մի աշակերտ մայրենի լեզվով գրելիս չպետք է այսքան և այս կարգի սխալներ թույլ տա, ուր մնաց գերազանցիկն ու բանաստեղծություններ գրողը:

Ահա մի այլ վեցերորդ դասարանցի ևս, որ իր ասելով հարվածային է: Հրազդանցի Է. Ռ.-ի նամակը նույնպես վերնագրված է այդպես. «Ծանոթագիր», չնայած վեցերորդ դասարանցին արդեն պետք է իմանա, որ չի կարելի նամակն այդպես վերնագրել: «Ուզում եմ ես էլ մյուս երեխաների նման մի լավություն արած լինել ձեզ և դրա համար «Պիոներ» ամսագրի համարներից մեկին եմ նվիրում իմ բազմաթիվ բանաստեղծություններից մեկը»,— գրում է Է. Ռ.-ն:

Իհարկե, նրա նամակը սխալների թվով զիջում է նախորդին, բայց նամակի հեղինակը թույլ է տվել մի շատ տգեղ, ավելի աններելի արարք: Նրա ուղարկած բանաստեղծությունը, որով ուզում է «լավություն անել խմբագրությանը», Համո Սահյանի բանաստեղծությունից թոցրած տողեր են, միայն թե աղավաղված, առանց կետադրության: Երևի մտածել է, որ եթե նույնությամբ արտագրի, չեն հավատա, որ իրենն է:

«Քարեր քարեր անմահ քարեր
Մամռապատ ու լերկ քարեր
Տաշված քարեր մաշված քարեր
Ծիրիմաքար դարձած քարեր:
Քարեր քարեր քարեր
Հայաստանի
Բերդեր դարձած շենքեր
դարձած
Մարդու առաջ միշտ
խոնարհված
Անխոս քարեր»:

Սրա անունը գրագողություն է, որի համար օրենսգրքերը պատիժ են սահմանել:

Ապրածս տհաճությունը ցրելու համար ես թերթում եմ գրասեղանիս դրված նամակների կույտը՝ գեղեցիկ հայերենով գրված նամակներ և բանաստեղծություններ, որոնք բոլորը՝ հաջողված թե անհաջող, գրագետ են գրված:

Նախ պետք է գրագետ դառնալ, ապա մտածել գրելու մասին, եթե գրել ես ուզում և ունես գրելու բան՝ քոնը, քո սեփական ասելիքը:

*ՑԵՆՆԻՔՍ ՍԱՐԴԱՐՅԱՆ*

*«Պիոներ»-ի արձակի բաժնի վարիչ*

## ԴՐՈՒԺԻՆՆԵՐՈՒՄ



## ԵՎ ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ

# ԱՆԱԿՆԿԱԼ ՄԻՋԱԴԵՊ

Ծաղկաձորի «Գառուն» պիոներական ճամբարում երևի ամեն ինչ սովորական հունով ընթանար, եթե «վերկացից» քիչ անց չպարզվեր, որ երկրորդ ջոկատը անհայտացել է: Երկրորդ հարկից կախված սավանից պատրաստած պարանը հուշում էր, որ նրանք պատուհանով են իջել: Բայց թե ինչո՞ւ առանց թույլտվության: Հասկանալի չէր: Ամենից ավելի, բնականաբար, նրանք էին անհանգստանում, ովքեր այդ ջոկատում ընկերներ կամ բարեկամներ ունեին, և հարցերով դիմում էին մանկավարժներին կամ ճամբարի ավագ ջոկատավար Օնիկ Սահակյանին.

— Ընկե՛ր Սահակյան, ի՞նչ կարող է պատահած լինել նրանց...

— Եթե տուն գնային, ճամպրուկները գոնե վերցրած կլինեին...

— Սպասե՛ք, սպասե՛ք, շուտով կպարզենք,— խմբից-խումբ անցնելով՝ հանգստացնում էր բոլորին ավագ ջոկատավարը:

Նախաճաշն անցավ առանց սովորական աղմուկի: Նախաճաշից անմիջապես հետո երեխաները շարվեցին տողանի հրապարակում: Յուրաքանչյուր ջոկատից ընտրվեցին մի քանի հոգի, որոնք գնացին անհայտացած ջոկատին փնտրելու: Հետաքրքրությունն ինձ ստիպեց միանալ նրանց:

Մտանք անտառ:

Երբ բավականին խորացել էինք անտառում, երկար ու զիլ մի կռինչ լսվեց: Արևը բավականին բարձրացել էր: Սպասում էինք, որ կռինչին կհաջորդի թըռչունի թռիչքը, սակայն ի զարմանս մեզ և ի սարսափ ավելի փոքրերի, հայտնվեցին երկու ցածրահասակ մարդիկ, որոնք ավելի շատ վայրենիների էին նման: Նրանց մարմինը պատած էր տերևներից ու խոտերից հյուսված պարաններով, գլխներին երկար ծաղկեշղըթաներ կային, իսկ դեմքերը ներկված էին տարբեր գույներով: Զենքերը բավականին հասարակ էին. յուրաքանչյուր «վայրենի» մի ձեռքով աղեղ էր բռնել, իսկ մյուսով՝ փայտե սուրսայր նիզակ:

Պատշաճ հեռավորության վրա կանգնելով, նրանք տաքօրինակ ու անհասկանալի ձայնով պահանջեցին, որ մենք հայտնենք, թե ինչն է մեզ բերել իրենց բնակատեղը:

Մինչ մենք բանակցում էինք, անսպասելի հայտըն-ված այդ մարդկանց հետ, ակամա նկատեցինք, որ արդեն շրջապատված ենք մի խումբ նիզակավոր վայրենիներով: Նրանք այդպես շրջապատած էլ մեզ ուղեկցեցին իրենց բնակատեղին, որը իրենից ներկայացնում էր անտառի ոչ մեծ բացատ: Բացատի տարբեր կողմերում պատրաստված էին խոտե եռոտանի հյուղակներ, իսկ կենտրոնում խարույկ էր վառվում: Խարույկի շուրջը նստած էին պատկառելի դիմագծերով սպիտակահեր վայրենիներ: Ամեն ինչից երևում էր, որ դրանք ցեղի ավագներն էին: Էլ ուրիշ ո՞ւմ պետք է այդպիսի ակնածանքով ու խոնարհությամբ լսեին զինվորները: Մեզ անհասկանալի լեզվով մի քանի խոսք փոխանակելուց հետո մեծերը ոտքի կանգնեցին, ընդառաջ եկան և հրավիրեցին կրակի շուրջը նստելու:

Շատերը չէին հասցրել տեղավորվել, երբ մի նոր կռինչ լսվեց: Զինվոր վայրենիները վազեցին կռինչի կողմն ու սկսեցին նիզակները նետել դեպի ծառի կատարը: Ծառի ճյուղերում աղմուկ լսվեց ու ինչ-որ ծանր բան թմփաց գետնին: Զինվորները վայրենի կանչերով վրա պրծան ու այն քարշ տվեցին խարույկի մոտ:

— Երևի հովազ կամ լուսան սպանեցին,— շշուկով ասաց վեցերորդ ջոկատի Գագիկը:

Սակայն քիչ անց պարզվեց, որ նրանց բռնածը... պարկ էր, սովորական պարկ: Իսկ պարկի պարունակությունը դատարկելուց հետո երկու կողմերի մասնակիցներն էլ բարձրաձայն քրքջացին, որովհետև պարկի մեջ կարտոֆիլ էր:

— Ի՞նչ արած, այսօր որս չունենք, ստիպված ենք կարտոֆիլով հյուրասիրել ձեզ,— ասաց ավագներից մեկը, հանելով գլխի ծաղկեշղթան, դա երկրորդ ջոկատի Արայիկն էր: Նա կրտսեր ընկերներին պատմեց նախնադարյան համայնական հասարակարգում ապրող ցեղախմբերի կյանքի ու կենցաղի մասին, նկարագրեց մամոնտների, փղերի ու այլ հսկա կենդանիների նրանց որսը, իսկ ընկերները կրակի շուրջը ներկայացնում էին այն վայրենի պարերն ու արարքները, որ ամեն մի հաջող որսից հետո կատարել են նրանք:

Այդ ընթացքում բացատ էին շտապել ճամբարում մնացած մյուս պիոներները: Մինչև ճաշ շարունակվեց ուրախ հանդեսը: Օրը չափազանց զվարճալի անցավ դրուժինայի համար, իսկ երեխաներից շատերը առաջին անգամ լսեցին ու պատկերացում կազմեցին նախնադարյան համայնական հասարակության ապրելակերպի մասին:

*ՎԱՀԱՆ ՄԵԽԱԿՅԱՆ*



## ՎԱՃԱՌԱԿԱՆՆ ՈՒ ԹՈՒԹԱԿԸ

Մի վաճառական թութակ ուներ: Մի անգամ նա գնում էր Բենգալիա և թութակին հարցրեց.

— Ի՞նչ բերեմ քեզ համար Բենգալիայից:

— Ոչինչ մի՛ բեր,— ասաց թութակը,— միայն խնդրում եմ գնաս ամենամեծ դաշտը, որտեղ մի մեծ ծառ կա: Այդտեղ շատ թութակներ կան: Նրանց կասես, որ իրենց ընկերը ապրում է վանդակում և եթե չօգնեն, նա կմեռնի: Ինձ բեր միայն նրանց պատասխանը:

— Շատ լավ,— ասաց վաճառականը:

Վաճառականը գնաց Բենգալիա, վերջացրեց իր գործերը և, ինչպես խոստացել էր, գնաց թութակների դաշտը:

— Ձեր ընկերը ապրում է վանդակում, եթե դուք նրան չօգնեք, նա կմեռնի:

Բոլոր թութակները անշնչացած վայր թափվեցին: Վաճառականը նայեց սատկած թռչուններին և հետո ետ վերադարձավ: Տանը նա պատահածի մասին պատմեց իր թութակին: Թութակը փռվեց վանդակի հատակին:

Վաճառականը վշտացավ. «Ի՞նչու ես նրան պատմեցի իր բարեկամների մահվան մասին: Խեղճը դրանից սրտաճաք եղավ»:

Նա թութակին հանեց վանդակից ու լուսամուտից դուրս շպրտեց: Թութակը սատկած չէր: Նա անմիջապես թռավ գնաց: Վաճառականը հասկացավ, որ ծառի վրայի թութակները իր գլխին խաղ խաղացին, սովորեցրին իրենց ընկերոջը ազատվել վանդակից:

*Անգլ. թարգմ. ՏԱՐԻԵԼ ԿՆՅԱԶՅԱՆԻ*

# ՄԵԾ ՖՈՒՏԲՈԼՆ ԱՅՍՏԵՂԻՑ Է ՍԿՍՎՈՒՄ

1967 թվականն էր: Երևանի Մալաթիա թաղամասում մի խումբ մարզիչներ կանգնել ու դիտում էին իրենց առջև փռված ամայի, քարքարոտ տարածությունը: Նրանցից քչերն էին հավատում, որ քարհանք հիշեցնող այդ տարածության վրա կարելի է ֆուտբոլի խաղադաշտերի համալիր կառուցել: Սակայն շինարարների, հատկապես Երևանի ֆուտբոլի դպրոցի ներկայիս դիրեկտոր Է. Գրիգորյանի եռանդուն նախաձեռնությամբ կառուցվեց ֆուտբոլի դպրոցի շենքն ու կանաչ խաղադաշտերը, այնուհետև մեծ մարզադահլիճը:

Ամեն տարի, օգոստոսի 20-ից մինչև սեպտեմբերի 15-ը դպրոցում կատարվում է ընդունելություն: Դպրոց ընդունվել ցանկացողները պետք է նորմաներ հանձնեն գնդակով վազքից, վարումներից, տեխնիկական հնարքներից և, իհարկե, երկկողմանի խաղից, որի ժամանակ ավելի պարզորոշ է երևում, թե սկսնակ ֆուտբոլիստն ինչ չափով է մոտ կանգնած նախասիրած մարզաձևին: Դպրոց կարող են ընդունվել 9—10 տարեկան երեխաները, որոնք հնարավորություն կստանան կատարելագործվելու:

Դպրոցի ուսմասվար, ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ Հ. Նալբանդյանի վկայությամբ, երբեմն բակում խաղացող երեխաները իրենց գեղեցիկ խաղով ուշադրություն են գրավում և դառնում ֆուտբոլի դպրոցի սան: Քիչ չի պատահել, որ այդպիսիները մեկ-երկու պարապմունքից հետո աստիճանաբար թոթափում են կաշկանդվածությունը և համընդհանուր ուշադրության արժանանում: Այնպես որ մարզիչների մոտեցումից, տված խորհուրդներից ու ճիշտ կողմնորոշումից շատ բան է կախված: Իսկ ֆուտբոլի մասնագիտացված դպրոցում աշխատող մարզիչների կազմում որակյալ մասնագետներ շատ կան: Շուրջ 30 մարզիչներից 13-ը ՀՍՍՀ վաստակավոր մարզիչ են, իսկ 10-ը՝ սպորտի վարպետ: Նրանց թվում են հայկական ֆուտբոլի ճանաչված վարպետներ Է. Գրիգորյանը, Կ. Սարաֆյանը, Հ. Նալբանդյանը, Հ. Խաչատրյանը, Հ. Չա-



լիկյանը, Հ. Կարմիրյանը, Կ. Բեգլարյանը, Ժ. Սուփրիկյանը և ուրիշներ: Այժմ ֆուտբոլի դպրոցում գործում է 73 խումբ (ըստ տարիքի): Յուրաքանչյուր մարզիչ պարապում է երեք խմբի հետ: Դպրոցում կազմակերպվում են հետաքրքիր միջոցառումներ: Այսպես, ձմռանը մարզադահլիճում տարբեր տարիքի ֆուտբոլիստների միջև անց են կացվում փոքր ֆուտբոլի (մինի ֆուտբոլ) մրցաշարեր, խաղեր են անցկացվում նաև ձյան ծածկույթով պատված խաղադաշտերում: Ամռանը տեղի ունեցող մրցումներից առավել հետաքրքիր են ֆուտբոլի վետերան, դպրոցի նախկին ուսմասվար Սարգիս Ամիրխանյանի հուշամրցումները: Անցկացվում է նաև ակումբային առաջնություն դպրոցի

## ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒ՞ՆԻՑ

1. Ո՞ր ծովում է, որ ձուկ են որսում երեք աշխարհամասերի բնակիչները:

2. Այն ո՞ր ծովն է, որը ողողում է սովետական երեք հանրապետությունների ափերը:

3. Ո՞ր ծովն է, որ միաժամանակ ողողում է սովետական չորս հանրապետությունների ափերը:

4. Ո՞րն է աշխարհի ամենաբարձր և անուշահամ լիճը:

5. Ո՞րն է աշխարհի ամենամեծ լիճը և ինչո՞ւ է ծով կոչվում, ի՞նչ ձկներով է հարուստ:

6. Աշխարհում ո՞րն է համարվում հոսք ունեցող ամենամեծ անուշահամ լիճը:

7. Ո՞րն է աշխարհի ամենախոր լիճը:

8. Սովետական Միության այն ո՞ր լիճն է, որտեղ թափվում են 336 գետ, բայց սկիզբ է առնում միայն մեկը:

*ԿԱՄՍԱՐ ԱՎԵՏԻՍՅԱՆ (աշխարհագրագետ)*

## ՀԱՅԱՍՏԱՆՈՒՄ

### ԿՈԿՌՈՇԵՆԻ, ՀԱՂԱՐՋԵՆԻ, ՄՈՇԵՆԻ, ՄՈՌՈՒԵՆԻ

Մեր հանրապետության անտառները, բացի վայրի պտղատու ծառատեսակներից, հարուստ են նաև շատ ու շատ ուշագրավ թփատեսակներով:

Դրանցից է կոկռոշենին: Դրանք ոչ մեծ բարձրության թփուտներ են, շրջանաձև և մոխրագույն ճյուղերով, որոնք պատված են խիտ փշիկներով և ունեն կարմրաշագա-



Կոկռոշենի

բոլոր թիմերի միջև:

Ֆուտբոլի մասնագիտացված դպրոցի համար նշանակալից են դպրոցականների համամիութենական սպարտակիադաները: Դպրոցի հավաքական թիմերը միաժամանակ իրենց ուժերն են չափում ՀամԼԿԵՄ Կենտկոմի կողմից սահմանված «Պատանեկություն» (15—16 տտ.) և «Հուսո» (17—18 տտ.) գավաթների խաղարկման մրցումներում:

Բացի այն, որ ֆուտբոլի դպրոցի թիմերը քաղաքի և հանրապետության առաջնությունների անփոփոխ չեմպիոններ են, նրանք հաջողությամբ են մասնակցում նաև համամիութենական մրցումներին՝ գրեթե միշտ գրավելով մրցանակային տեղեր: Ահա առավել հիշարժան նվաճումները. դպրոցականների համամիութենական սպարտակիադայում 1963 թ.՝ 2-րդ տեղ, 1969 թ.՝ 3-րդ: «Պատանեկություն» գավաթի խաղարկում 1968 թ.՝ 3-րդ տեղ, 1969 թ.՝ 2-րդ: «Հուսո» գավաթի խաղարկում 1968 թ.՝ 3-րդ տեղ, 1970 թ.՝ 4-րդ:

Անցած տարի Երևանում տեղի ունեցան ֆուտբոլի դպրոցների համամիութենական առաջնության մրցումներ, որին մասնակցեցին Միության 13 թիմեր: Այդ մրցաշարում գերազանց հանդես գալով, առաջին տեղը գրավեց մեր ֆուտբոլի դպրոցի թիմը (մարզիչներ՝ Հ. Սիրականյան և Կ. Վարդանյան):

Իր հիմնադրման օրից սկսած՝ ֆուտբոլի դպրոցը վարպետ թիմերին մշտապես ապահովել է որակյալ կադրերով: Իսկ երկրի չեմպիոն և գավաթակիր «Արարատ» թիմի 7 ֆուտբոլիստներ՝ Ս. Գևորգյանը, Ս. Մարտիրոսյանը, Ա. Կովալենկոն, Ն. Մեսրոպյանը, Ա. Սարգսյանը, Ս. Բոնդարենկոն, Ն. Ղազարյանը այս դպրոցի սաներն են եղել: Ֆուտբոլի դպրոցում մկրտություն ստացած ևս 15 ֆուտբոլիստներ ներկայումս հանդես են գալիս «Արարատի» կազմում:

Մեր ֆուտբոլասերներից ո՞ւմ արդյոք ծանոթ չէ Սարգիս Հովիվյանի անունը: Ճանաչված ֆուտբոլիստն ավարտելով իր մարզական ուղին, չհեռացավ ֆուտբոլից: Անցած տարի, աշնանը Երևանում բացվեց ֆուտբոլի երիտասարդական մարզադպրոց, իր տեսակի մեջ առաջինը երկրում և դպրոցի դիրեկտոր նշանակվեց Ս. Հովիվյանը:

Ֆուտբոլի պատանեկան դպրոցներն ավարտելուց հետո շնորհալի պատանիները (16—21 տարեկան) կարող են ընդունվել «Հովիվյանի դպրոցը», որտեղ կատարելագործելով իրենց վարպետությունը՝ հետագայում տեղ կգտնեն մեր վարպետ թիմերի կազմերում:

Կանցնեն տարիներ, դպրոցի սաները կթրծվեն, կառնականան, ոտք կդնեն մեծ ֆուտբոլի մայրուղիները, և, ո՞վ գիտե, գուցե նրանցից ոմանք ևս անցնեն այն աղմկոտ, փառավոր ուղին, ինչպես մեր անցյալի ու ներկայիս ֆուտբոլիստներից շատերը:

*ԱՐՍԵՆ ԲԱԲԱՅԱՆ*

# ՏԱՐԱԾՎԱԾ ՎԱՅՐԻ ՊՏՂԱՏՈՒՆԵՐԸ

նակավուն գունավորում: Տերևները մանր են, հերթադիր, ատամնավոր, 3—5 բլթականի են, բլթակները սեղմված են կենտրոնական բլթակին: Տերևները հիմքում մոխրագույն են, մեկ կամ երբեմն բազմաթիվ երկար մազիկներով:

Ծաղիկները դասավորված են 1—2-ական, ընդ որում հաճախ երկրորդը չի զարգանում:

Հատապտուղները կարմիր են, գնդաձև կամ երկարավուն, տարբեր գունավորումներով: Տարածված են անտառներում կամ անտառների եզրերին, քարակույտերի մոտակայքում: Հանդիպում են հյուսիսային Հայաստանում, Լոռիում. Սևանում, Ապարանում, Երևանում, Ջերմուկում:

Հաղարջենին նույնպես տարածված է մեր անտառներում, այն նույնպես թուփ է: Տերևները հերթադիր են, ատամնավոր, հնգաբլթակ, ունեն մուգ կանաչ գունավորում: Թուփը ունի շագանակագույն ընձյուղներ և մուգ բալագույն ցողուններ: Պտուղը հյութալի է, ողկույզանման, հատապտուղը լինում է սև կամ կարմիր գույնի: Տարածված է անտառներում, անտառների եզրերին, անդունդների վրա և անձավներում: Մեզ մոտ կարելի է հանդիպել Ստեփանավանի, Իջևանի, Սևանի, Ապարանի (Արայի լեռ), Զանգեզուրի և այլ անտառներում:

Մեզ մոտ տարածված մոշենին ու մոռենին իրենց հատկություններով միանման են: Թփեր են: Բազմամյա բույսերի արմատներից առաջանում են միամյա, երկամյա, բազմամյա ցողուններ, որոնք կարող են լինել ուղիղ, կորացած, փռված և սովորաբար ծածկված են փշերով:



Հաղարջենի



*Մոշենի*

Տերևները պարզ են կամ բարդ, հաճախ ջղի երկայնքով ծածկված են բարակ փշերով: Եռամասնյա են, եզրերում խոր և անհավասար, ատամնաձև կտրտվածքներով, երկու կողմից կանաչ, ոչ մեծ քանակությամբ մազիկներով: Ծաղիկները խոշոր են, սպիտակ: Մոշենու պտուղները ծայրամասերում սև են կամ կարմրասևավուն, իսկ մոռենու պտուղները մորագույն են, հեշտ անջատվող, բազմակորիզ: Հոյակապ համապտղային թփեր են, պարունակում են մեծ քանակությամբ շաքարներ և օգտագործվում են սննդի մեջ: Չոր վիճակում օգտագործվում է բժշկության մեջ: Տերևները և շիվերը պարունակում են խցանային նյութեր: Տարածված են մեր հանրապետության գրեթե բոլոր շրջաններում, բացի Արարատյան հարթավայրի որոշ վայրերից:

Սիրելի՛ պիոներ-դպրոցականներ, ճանաչեցե՛ք և խնամքով վերաբերվեք մեր բնության զարդերի՝ վայրի պտուղների ու հատապտղատու բույսերի նկատմամբ: Միչուրինյան խմբակներում ուսումնասիրեցեք այդ տեսակները բնության մեջ և դպրոցամերձ հողամասերում: Ձեր ավագ ընկերների, ուսուցիչների օգնությամբ ուսումնա-փորձնական հողամասերը հարստացրեք տարբեր տեսակի վայրի պտղատուների հավաքածուներով, դրանց վրա կատարեցեք պատվաստումներ ,նախօրոք սովորելով պատվաստման մեթոդները և տեխնիկան: Կատարված աշխատանքներով հանդես եկեք հարևան դպրոցների · պատանի բնասերների մոտ, կատարեք փորձի փոխանակում, հայտարարեք մրցույթներ տարբեր թեմաների շուրջը: Նշանակեք հատուկ օր՝ «Կանաչապատման օր» և աշխատեք ձեր քաղաքների, գյուղերի ու բանվորական ավանների փողոցների մայթերը զարդարել վայրի պտղատուների հիասքանչ տնկարկներով:



*Մոռենի*

*ԼԵՎՈՆ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

---

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

### (ՀԱԶԱՐ ՈՒ ՄԻ ՀԱՐՑ ԱՇԽԱՐՀԱԳՐՈՒԹՅՈՒՆԻՑ)

1. Միջերկրական ծովում ձուկ են որսում երեք աշխարհամասերի՝ Եվրոպայի, Ասիայի և Աֆրիկայի բնակիչները:

2. Սև ծովը, որը ողողում է Ուկրաինայի, ՌՍՖՍՀ-ի և Վրաստանի ափերը:

3. Կասպից ծովը, որը ողողում է ՌՍՖՍՀ-ի, Ադրբեջանի, Ղազախստանի և Թուրքմենիայի ափերը:

4. Աշխարհի ամենաբարձր և ամենաշահամ լեռնային լիճը Տիտիկական է, Հարավային Ամերիկայում՝ Պերու և Բոլիվիա պետությունների սահմանում: Նա գտնըվում է ծովի մակարդակից 3812 մետր բարձրության վրա: Մակերեսը 8300 քառակուսի կիլոմետր է, իսկ խորությունը՝ 304 մետր:

5. Աշխարհի ամենամեծ լիճը համարվում է Կասպից ծովը, որն իր մեծության պատճառով ծով է կոչվում: Նրա զբաղեցրած տարածությունը ներկայումս 371 հազար քառակուսի կիլոմետր է (ի դեպ, վերջին քառասուն տարվա ընթացքում կրճատվել է 53 հազար քառակուսի կիլոմետրով): Ինչպես գիտեք, նա կապված չի համաշխարհային օվկիանոսի հետ: Իր մակարդակով ցածր է նրանից 28 մետրով: Կասպից ծովը հարուստ է օսետր և սևրյուգա ձկներով, որոնք տալիս են շատ թանկարժեք սև խավիար: Այս լճում են տարածված այս երկու տեսակի ձկները: Համաշխարհային մասշտաբով սև խավիարի մոտ իննսուն տոկոսը ստացվում է Կասպից ծովից:

6. Հոսք ունեցող ամենամեծ ամենաշահամ լիճը Վերին լիճն է, որը գտնվում է Հյուսիսային Ամերիկայում: Մտնում է Մեծ լճերի սիստեմի մեջ: Նրա մակերեսը հավասար է 82.000 քառակուսի կիլոմետրի:

7. Բայկալ լիճն են թափվում թվով 336 գետ, բայց սկիզբ է առնում մեկը՝ Անգարան: Նա դարձել է «էլեկտրականության գետ», շընորհիվ Իրկուտսկի և Բրատսկի էլեկտրակայանների:

8. Աշխարհի ամենախոր լիճը Բայկալն է՝ 1620 մետր: Չնայած Բայկալը իր մակերեսով Բալթիկ ծովից փոքր է տասներկու և կես անգամ, բայց ջրի ծավալը երկու լճերում էլ նույնն է, այսինքն՝ 23.000 խորանարդ կիլոմետր է: Ի դեպ, Բայկալը իր մեծությամբ գերազանցում է Բելգիա պետությունը 1500 քառակուսի կիլոմետրով: Բայկալը իրավացիորեն համարվում է բնության հազվագյուտ ստեղծագործություններից մեկը: Դա աշխարհում թվածնով հագեցված անուշահամ ջրի ամենամեծ բնական ջրամբարն է:




## ԵՐԱԺՇՏԱԿԱՆ ԽԱՉԲԱՌ ԳԱՂՏՆԱԳԻՐ

*Սկսելով գծիկով նշված բջիջից, ժամացույցի սլաքի շարժման ուղղությամբ լրացրեք հետևյալ հարցերի պատասխանները.*

*1. Գերմանացի մեծ կոմպոզիտոր։*

*2. «Սևաստոպոլյան վալս» օպերետի հեղինակը։*

*3. Տաղանդավոր կոմպոզիտոր, որը 12 տարեկան հասակում գրել է «Կեղծ գեղջկուհին» օպերան։*

*4. Աշխարհահռչակ ջութակահար։*

*5. Ավստրիացի հանրահայտ կոմպոզիտոր, «Վալսերի արքան»։*

*6. Հայ թագավոր, որի մասին օպերա է գրել իտալացի կոմպոզիտոր Սկարլատին։*

*Բոլոր հարցերին ճիշտ պատասխանելուց հետո գծագրի երկանիշ թվերը փոխարինեք համապատասխան տառերով. առաջին թիվը ցույց է տալիս խաչբառի հարցի համարը, իսկ 2-րդ թիվը՝ այդ հարցի համապատասխան տառը։ Կկարդաք հայկական մեկ օպերայի և մեկ բալետի անուններ։*

*Կազմող՝ ՌԱՖԻԿ ՀԱԿՈԲՅԱՆ*

## ՊԱՏԱՍԽԱՆՆԵՐ

### ԳԱՂՏՆԱԳԻՐ «ՊԻՈՆԵՐ» № 9

*1. ՄՈՍԿՎԱ. 2. «ՊԻՈՆԵՐ». 3. ԱՐՏԵԿ. 4. ԴԱՅԴԱՐ. 5. ԲՈՐԻՍ. 6. Զ.*

*Խարույկով խարկվենք*
*Գիշերներ կապույտ,*
*Մենք պիոներներ ենք,*
*Բանվորի սերունդ։*

Լույս է տեսնում 1923 թվականից

# ՊԻՈՆԵՐ

№ 10 հոկտեմբեր 1974 թ.

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԵՎ Վ. Ի. ԼԵՆԻՆԻ ԱՆՎԱՆ ՊԻՈՆԵՐԱԿԱՆ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅԱՆ ՀԱՆՐԱՊԵՏԱԿԱՆ ԽՈՐՀՐԴԻ ՄԱՆԿԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի առաջին էջը՝

ՆԿ. ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆԻ

Գլխավոր խմբագիր՝ ԱՆԱՀԻՏ ՍԱՀԻՆՅԱՆ

**Խմբագրական կոլեգիա՝**

ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԳՐԻԳՈՐՅԱՆ Վ. (պատասխանատու քարտուղար), ԵՍԱՅԱՆ Վ., ԹԱԴԵՎՈՍՅԱՆ Թ., ԹՈՐՈՍՅԱՆ Ժ., ԽԱՆՋՅԱՆ ԳՐ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՀԱԿՈԲՅԱՆ Հ., ՀՈՎՍԵՓՅԱՆ Ռ., ՀՐԱՉՅԱՆ Խ., ՍՄԲԱՏՅԱՆ Կ. (գեղ. խմբագիր), ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս.

«Пионер» на армянском языке. Орган ЦК ЛКСМ Армении и республиканского совета пионерской организации им. В. И. Ленина. Адрес редакции: 375200, Ереван-15, ул. Кармир банаки, № 15.

Հասցեն՝ 375200, Երևան—15, Կարմիր բանակի փողոց, № 15։
Հեռախոսներ՝ 56—32—72, 5[illegible]—08—3[illegible], 56—[illegible]4—96։

ՎՖ 04728։ Պատվեր 1517։ Տպաքանակ՝ 78468 ։ Տպագրական 3 մամուլ։ Ստորագրված է տպագրության 23/IX 1974 թ.։

ՀՍՍՀ Մինիստրների սովետի հրատարակչությունների, պոլիգրաֆիայի և գրքի առևտրի գործերի պետական կոմիտեի Հ. Մեղապարտի անվան պոլիգրաֆկոմբինատ, Երևան—9, Տերյան փ. № 91։

ԳԻՆԸ 10 Կ.

## ԾԱՂԻԿՆԵՐ

*ԱԼԵՔ ԽԱՉՈՒՆՑ*

Մառից տանձն է կաթում վայրի՝
Թափ է տալիս աշնան քամին,
Ու պռնկից մուտիկ ժայռի
Կրակներ է թափում հոնին:

Դուք էլ հիմա, ի՜մ ծաղիկներ,
Գերի դարձած աշնան քամուն,
Հեռանում եք՝ բուրմունքը ձեր
Թողած շաղոտ այս անտառում:

Մահ է բերում աշունը ձեզ,
Ու գնում եք առանց լալու,
Կարծես գիտեք, ի՜մ ծաղիկներ,
Որ նորից եք աշխարհ գալու:

## ՀՈՂՆ ՈՒ ԾԱՌԸ

*ԳԵՎՈՐԳ ԽԱՉԱՏՐՅԱՆ*

Հողն այս մեջն եղած զորությունը ողջ
Տվեց այս ծառին,
Ծառն այս մեջն եղած զորությունը ողջ
Տվեց այս հողին...
Եվ իրար անվերջ հավասարապես
Տրվելուց հետո,
Երկուսն էլ ամքել ու չորացել են:
Եվ հիմա ծառը երբ քամիների
Առաջ ճոճում է կատարն իր մեռած,
Ինձ թվում է, թե նա իր ճյուղերին
Հոգնածությունն է օրորում հողի...

## ՄԱՅՐ ԾԻԾԵՌՆԱԿԻՆ

*ԷԴՈՒԱՐԴ ՄԻԼԻՏՈՆՅԱՆ*

Քո թրթռացող թևերի ծալքերում
Արևի հատիկներ կան,
Որ տանում ես քո ձագուկներին:

Քո անմեղ ու բարի կտցին
Ցորենի խարտյաշ հասկ կա,
Որ տանում ես քո ձագուկներին:

Քո գլխի աչքերի խորքում
Լույսի հետ շաղախված հույս կա,
Որ տանում ես քո ձագուկներին:

Քո մաքուր ու քնքուշ մարմնին
Թառած հոգնություն կա,
Որ չես տանում քո ձագուկներին,
Որ պահում ես քեզ:

*Նկ. ՀԵՆՐԻԿ ՍԻՐԱՎՅԱՆԻ*

